# ԱՌԱԿՔ
# ԵՒ
# ՈՏԱՆԱՒՈՐՔ ԽՐԱՏԱԿԱՆՔ։

Մատուցեալք ՚ի նախնեաց մերոց՝ ՚ի հրահանգ ուսումնասէր համբակաց։

Տպագրեալ յամի Տն 1790.
՚ի Յունվարի . 18։

Եւ ՚ի թուականութեան հայոց. ՌՄԼԹ։

՚Ի հայրապետութեան տն Ղուկասու Հայոց կաթուղիկոսի։



՚Ի ՎԵՆԵՏԻԿ։
՚Ի Վանս սրբոյն Ղազարու։
յանուն անտոնի պոլթօլի։
Հրամանաւ Մեծաւորաց։



# ԲԱՆ ԱՌ ՎԵՐԾԱՆՈՂՍ։

Շահաւէտ օգտակարութիւնք առակաց կամ առասպելեաց քաջայայտ են առ ամենեսին , և թէ զհնոյն պատմածն կազմութեան զուարճացուցեալ զհետս մարդկան՝ մեղմով իմն և քաղցրութեամբ խրատեն զայլ 'ի ներգործութիւն խոհեմաւորց նորին , որ այն ինքն է խոտորել 'ի չարէն՝ և հետևել բարւոյն , առ ուղիղ և ըստ կարգի անօրինելոյ զառաջիկայ կենցաղս : Նմին իրի և ուսումն սորին թէպէտ և 'ի դէպ իմ համայն մարդկան , բայց առաւելապէս և կարի իսկ կարևոր գտանիցի պարզամտաց և համբակաց . մինչև պատուիրել Պղատոնի մարց և սնուցչաց առ հասարակ , այնպէս ուղղել ըզսէրս մանկանց առասպելօք՝ քան զմասաւոր մարմինս նց սովոր են ձեռամբ կերպարանել : Եւ յիրաւի , քանզի 'ի թարմ տիոց անտի հնչունեալ իմն՝ առ նիւթականութիւն , և սթափութեամբ յաղագս 'ի ձև պատմութեան յանդիմանեն լինելոյն , կամակար 'ի ներքս 'ի միտս ամբարեալ զառասպելսն , զոյգ ընդ նոսին տպաւորին և նշանակեալսն 'ի նոցանէ անմեղութեան հանճարեղ խրատուքն . որովք անդստին 'ի մատաղութեան մարդիկն բարւոք զքաղաքավարութիւն ուսցեալ , և ըստ օրինաց բանականին հանդիսանալ առ յապայն : Եւ 'ի սակս սորին պատճառի այսպէս առակք զգօնաւորք յօրի-

Ընդ ստորին իսկ ՚ի տղայականն տիս կրթութիւն վարեցաւ, զքանակական ստանայ շնորհ . . . . Իսկ այլք անվարժութեան զերևանման, և աննարի խենեշ տաղտկութեամբք զգածեալք լինին . յետ վայելչական իրաց մերկք և կողոպուտք լինելով, զվերջին թշուառութեանցն ամբարեն կորուստ ։

Աերռոյեր . Գերք . Ե . ԳԼ . Է ։



# Ա. Ռ Ա. Կ Ք

## ԱՌԱՍՊԵԼԱԿԱՆՔ ԵՒ ԲԱՐՈՅԱԿԱՆՔ.

### Որ կերպարանէ զՃշմարտութիւն:

Արարեալ ի ձեռն վարդապետին Մխիթարայ մականուն Գօշ:

---

## Ա.



ԱՍՏՈՒԱԾ յառնելն երբեմն զարարածս՝ երկեաւ հակառակէն՝ և խառնեաց զծանրն ընդ թեթևին, զտկարն ընդ հզօրին, զի թէ հակառակ դարձցին՝ առ միմեանս, և ոչ ընդ արարչին:

Խրատէ առակս զթագաւորս՝ կարգել զմեծամեծս և զնուաստս ընդ-

դէմ միմեանց, զի մի՛ ընդ Թագա-
ւորս, այլ ընդ միմեանս պատերազ-
մեսցին ։

Բ ։

Փափագեաց երկին խոնարհիլ, եւ ե-
րու զի ամենեցուն ընծայի է. սա-
կայն երկեաւ անդամնել 'ի փառաց.
այլ ըղձաւորք ճառագայթաձեւ զնա
արարին ։

Ուսուցանէ օրինակս՝ համարձակու-
թեամբ խոնարհիլ փառաւորաց, զի
ընտանութեան ընդ նմ պատիւ՝ ոչ թո-
ղու անարգել ։

Գ ։

Կարծեաց երբեմն զանձնէ աստեղա-
կըն՝ թէ ա՛ծ իցէ՝ 'ի բարձրանալն.
իբրև խոնարհեալ եմուտ ընդ երկ-
րաւ՝ ծանեաւ զբնութիւն իւր ։

Յայտնէ գաղափարս՝ զի ոմանց 'ի
թագաւորաց անմտից 'ի բարձրա-
նալն յաղթութեն փառօք՝ կարծեցան
ա՛ծ լինել, 'ի մտանելն 'ի գերեզ-
մանն՝ գիտացին զբնութին իւրեանց ։

Դ ։

Պ.

'Ի լռման՝ լուսին կարծեաց զանձնէ
թէ արեգական իցէ, և զտիւ լուսա_
ւորէ. այլ 'ի պակասել լուսոյն՝ և ոչ
զգիշեր լուսաւորէ:

Յանդիմանէ եղանակս զայնպիսիկ՝ որ
'ի պատահել միոյ իրի պատուոյ՝ մե_
ծամեծաց կարծէ ժամանել. այլ և
ոչ զոր-ունի վայելէ յանմտանալն.

Ս.

Ժողովեալ երբեմն աստեղաց՝ ա_
սեն 'ի նոցանէ ծերագոյնքն. մեք
բազումք եմք՝ զլո՛յս զտի՛ւ և զգի_
շեր ոչ լուսաւորեմք նման արեգա_
կան և լուսնի. ասէ ոմն՝ զի ոչ միա_
բանութ՟ վարիմք: Սա խոնարհեալ
միաբանութ՟ նախ հերքել զարե_
գակն, և 'ի ծագել լուսնի՝ պարտե_
ցան. և ասեն, այսպէս 'ի սմանէ
աղօտացաք, զի՞նչ և յարեգական
ծագելն լիցուք. և զղջացեալ զպար_
տութի՟ խոստովանեցան:

Խրատէ առակս, թէպէտ և բա_
զումք իցեն՝ և տկարք, հզօրի յաղ_

թէ ոչ կարեն . իմաստութիւն է՝ այլ եւ տկարին զփորձ առնուլ՝ եւ զղջանալ . որ եւ թողութեան է արժանաւոր ։

Օ ։

Երկիր հայեցեալ 'ի բարձրութիւն լերանց՝ համարձակեցաւ լինել եւ երկին . եւ ոչ կարաց զլուսաւորս ընդ ինքեամբ առնել նման երկնի՝ եւ լուսաւորել ։

Յանդիմանէ նշանակս զաշխարհական ոմանս , որ փքացեալ 'ի ճոխութիւն իւրեանց , զքահանայից կամին յափշտակել զպատիւ . սակայն լուսաւորին՝ քան լուսաւորեն , նման երկրի , զի լուսաւորի՝ քան լուսաւորէ ։

Ի ։

'Ի մէջ տնկոց խորհուրդ եղեւ՝ թէ ո՞ւմ արժան է թագաւորել 'ի վերայ մեր . եւ ոմանց ասացեալ զարմաւենի թէ բարձր է հաստակաւ , եւ քաղցր է պտղովք . իսկ որթոյ հակառակեալ ասէ . Ես եմ ուրախարարն՝ ինձ արժան է լինել . իսկ թզենի՝ թէ ես

զի

զի քաղցրաճաշակ եմ. խակ դժնիկ՝
թէ ես հարկանող եմ, ինձ 'ի դէպ
է. և առաւելութ(եա)ն իւրաքանչիւր
զանձն յարդէր, և անկարօտ ասէր
այլոց: Իսկ արմաւենի խոկացեալ
գիտաց՝ եթէ ո՛չ հաւանին նմա թա-
գաւորել, զի զայլս ընդ իւրեանց ո՛չ
կամէին ձոխանալ, և ասաց թէ յա-
ւէտ ինձ վայել է լինել արքայ. և ա-
մենեքին վկայեցին և ասեն, բարձր
ես հասակաւ և քաղցր պտղով. բայց
երկու ինչ պակասէ քեզ, զի յաւուրս
մեր ո՛չ տաս պտուղ. և 'ի շինուած
ո՛չ պատշաճիս. մանաւանդ զի բարձ-
րութ(եա)ն քո՝ անճաշակ բազմաց լինիս.
և նա պ(ա)տ(ա)սխանեաց թէ զձեզ իշխանս
կարգելով այնպէս թագաւորեմ. և
'ի կատարեալ ժամանակացն իմոց՝ և
ուղղոց ձերոց թագաւորեցից: Նու-
յօրինեաց զկարգ թագաւորութեն
յանձն առնլով նոցա զորթ՝ գինե-
պետ, և զթզենի՝ հիպատոս, զդժ-
նիկ՝ դահճապետ; և զնռնենի՝ բը-
ժշկապետ, և զայլս 'ի պտղոց 'ի դա-
մանս, զմայրս՝ 'ի շինուածս, զան-
տառս՝ յայրումն, զմորենի՝ 'ի բանտ,

և զիւրաքանչիւր՝ յիւրաքանչիւր գործ ։

Յանդիմանս կացուցանէ տառակս, թէ ոչ ոք կարէ ճոխանալ առանց անփառ-ռից, և ոչ բարձրանալ՝ առանց ա-նարգից ։ Այլ դարձեալ՝ առձեռն պարգևօք ակն ունին անապան յու-սոյ բազումք տեսանց իւրեանց ։

Բ ։

'Ի լինել որթոյն որդէկոտոր 'ի դար-նանային ժամանակի, և յարտաս-ուհելն, եկին տունկք նմ՝ մխիթա-րել զնա, եկն ընդ նմ և մորենի. և այս ինչ էր մխիթարութեն բան, մի լար ասեն, դարձեալ ծնանիս որ-դիս. և նա ասէ՝ ծնանիմ, և դար-ձեալ կոտորեն, և այդ զինչ մխի-թար է, այլ այս է մխիթար անձին, զի մնացեալն իմ որդիք՝ պտղաբեր լինին, և պատճառ ուրախութեան մարդկան. և այսու անձն մխիթա-րէր ։ Իսկ մորենի ասէր եկի մխիթա-րել զքեզ, զի լինև զաչադ որբիցես. և նա ասէ, շնորհ ունիմ անկապոր-ծին՝ որ խլէ զքեզ յարմատոյ իմմէ ։ Յայտ-

Յայտնէ ապացոյցս՝ զի առ ժամա-նակ մի է մխիթարիլ մնացելովքս , զի մահկանացու է ազգ մարդկան . այլ այն իսկ է տիրապէս մխիթարու-թիւն՝ զի ըստ հաճոյից տն իցեն. մնա-ցեալն ժառանգք : Բայց մորոսաց բան առաւել զայրացուցանէ՝ քան թէ մխիթարէ զսգաւորս , նման մո-րենոյն . զոր շնորհ ունի բնաւորն ոչ տեսանել զանմիտ մխիթարիչսն :

Թ՚ :

Պարծելով ոխս ընդ որթոյ մորենի՝ ասաց հակառակեալ , թէ նման քեզ բարձրանամ , և զոյգ պտղաբերիմ . և առաւելում՝ զի ՚ի ձմեռայնի ան-թառամ լինիմ . ապաքանեաց որթ զնա , թէ պարծանք քո կատարեալ է՝ յորժամ ՚ի հնձան ժողովեսցիս յաշնան յեղանակի . և ՚ի լինել աշ-նան՝ կոխան եղեալ մորենի :

Ուսանիմք յեղանակէ աստի , զի յան-դիմանեալ անմտութե՝ ՚ի դէպ է լռել , և ոչ երկրորդ ձևանալ կատա-րելոյ . զի միում բազմակատարին նմանել ոչ է կար :

Ժ՚ :

## Ժ։

Նռնենի և Թզենի առ միմեանս սէր ունել կամեցան, և քաղցրութեամբ հաւասարեցան. բայց ընդ թըթուութե նռնենայն տաղտկացաւ Թզենի, և լուծաւ դաշինքն։

Իմաստս տայ այս առակ, նախ փորձել սիրելեաց զմիմեանց բարս. զի ամենայնիւ՞ նման միմեանց իցեն, ապա թէ ոչ՝ դիւրաւ լուծանելի իցէ սէր։

## ԺԱ։

Նախանձ առ միմեանս կային խընձորի և տանձի՝ եղբարք գոլով. և այսպիսի էր յեղանակն. թէ հարազատ մեք, զիա՛րդ թագաւորք զօրինակդ քո արարեալ ոսկի, ասէր առ խնձոր. 'ի ձեռին նկարեն։ Եւ նա ասէ, զի բոլորատեսակ եմ և անուշահոտ, և թէ ո՛չ նախանձիս՝ առնեմ լինել և քեզ ընդ իս 'ի սեղան ձոխից, թէ և նշանակն ո՛չ լինի առկի. և նա տակաւին խանդայր՝ մինչև արկաւ խողից.

Օայս

Օ այս առայ իմանալ յեղանակս՝ թէ ոչ է պարտ անարգել եղբօր նախանձել ընդ փառս եղբօր՝ որ պատուիր ՚ի մեծամեծաց · զի ՚ի շնորհս նիր և նա փայլեսցէ , թէ յանդգնի՝ եւ առաւել անարգի ·

Ժ · Բ ։

Հարցաւ ընդ Թզենի՝ թէ զիարդ է զի բազում ոստս առ երկրաւ տարածանես · և նա ասէ , քանզի բազում են թշնամիք իմ , և ես խոնարհիմ զի մի դաստակոտոր եղէց · և նախ քան զելանելն յիս՝ յագեցուցանեմ և մնուանան զչարութին ։

Խրատէ զմեզ առակս՝ խոնարհութք՝ և սեղանօք և քաղցրութք՝ ը առաջ ելանել թշնամեաց , յորժամ առնանանել ոչ կարեմք · զի շիջանիցին ՚ի դառնութէ բարուց · և մոռասցին զչարիս ։

Ժ · Գ ։

Խնամութին առնել ընդ միմեանս կամեցան թթենի և ձիթենի · և պանծայր ՚ի զօրութին իւր իւրաքանչիւրոք , ձիթենի՝ յաղագուշարձութ

և

և 'ի պտղաւորութեն, մանաւանդ զի պտուղ նր նիւթ է ձիթոյ, և ձէթ նիւթ է լուսոյ, և լոյս լուծիչ խաւարի. իսկ թթենի 'ի քաղցրութիւն պտղոյ, և զի սաղարթ իւր նիւթ է մետաքսոյ, զոր որդունք ծնանին, յորմէ կերպասք լինին, զոր թագաւորք և իշխանք վայելեն: Որում և դիմադրէ ձիթենի զդիւրանցութի պտղոյ նր, և զախտաւորն լինել հանդերձ, քան թէ հարկաւոր. և զի 'ի գիշերի մերկանայ. բայց լոյս 'ի գիշերի վառի: Ասէ թթենի՝ այլ 'ի տունջեան շիջանի. և ասէ ձիթենի՝ թէ ոչ շիջանի, այլ յազգակիցն իւր խառնի, իսկ փառք քո ծաղկընկէց է և անցաւոր. և այսու պարտեն թթենի՝ և հայցէ լինել իւրն:

Նշանակ առակիս այսպիսի է, զի թագաւորական ազգ թէպէտ փառաւոր է, այլ երկրաւորօքս Քոխանայ, որք հոսանուտք են, որում թթենիդ է նշանակ: Իսկ քահանայական տոհմ թէպէտ և աղքատ իցէ՝ մեծապատիւ է հոգևորօք, և արժան է զուգել ընդ թագաւորական տոհմի:

ԽԳ:

ԾԳ ։

Յանփորձից ոք տնկոց հարցանէ զնռնենի. զի է զի բազում առնես ծաղիկ, սակայն զի հոսես և ծաղես. և նա ասէ՝ ազահ է ակն տնկողին, և ես նորքոստ և ծանրապատուղ. և եթէ ոչ էր կակղուղեշ, բառնալ ոչ կարէր, և յաղագս այնորիկ հոսեմ՝ զի մի՛ բեկայց ։

Յանդիմանէ առակս զայնոսիկ՝ որ առնուլ քան զկարն և զսահման ա-րարչին պահանջեն 'ի սպասաւորաց պաշտիլ. որոց խնամածելի է՝ զի մի՛ 'ի զօրութ՟է հատեալք անկցին, նը-մանապէս և 'ի հոգևորսն եղիցին, ըստ որում և ա҃ծ խնամէ ։

ԾԴ ։

'Ի մրգացն սալոր և դամոն և ծի-րան ամբաստանեցան՝ թէ ընդէ՞ր զստամոքսն հարուն. և ն҃ք պատաս-խանեալ ասեն. ձեզ ոչ է գիտելի. այլ հմուտք 'ի բժշկաց գիտեն՝ զի վնասիչ եմք որովայնի. արդ՝ եթէ զայս գործեմք՝ և յաճախեն յուտել, զինչ

զի՞նչ առնէին եթէ ոչ լորձնեաք . ո՞րով շնորհ ունել՝ քան թէ ամբաստանել պարտիք ։

Լուծումն առակիս այս է , զի դատն և՝ ապականիչ է չարութիւն ոգւոյ և դժնդակ 'ի գործել նախ . և ախտաւորք կամին զի դիւրագործ լինիցին . զի թէ դժուարաւ գործին՝ և այնքան ախորժ են , զի՞նչ առնէին եթէ դիւրագործք էին . որ և յայտ իմաստնոց է՝ զի գոհանալի է , և ոչ ամբաստանելի զխնամողէն ։

Ժ. Օ. ։

Յատենի երբեմն յանդիմանել բռնաւ դեղձի զսերկեւլի՝ ասելով . դեղձն ես տեսլեամբ և դժուարուտելի մարդկան . իսկ ես՝ բարետեսիլս և դիւրաճաշակ . և նա ասէ՝ կեղծաւոր ես ամենեւին և պատրիչ մարդկան , քաղցր երևիս 'ի ճաշակել , և մտեալ 'ի յորովայն բազում փնաս գործես . իսկ ես դեղձն եմ , զի ցաւակցիմ հիւանդաց՝ 'ի տես երթալով և զհիւանդութիւն բառնալով . և ոչ որպէս դու հալածեալ

'ի

'ի Հիւանդաց ։

Յայտնէ միտք տուակիս, զի կեղծաւորք միշտ զՃշմարիտս յանդիմանեն՝ իբրև զխոշորս վարուք և խիստս մարդկան՝ յօրինադրել. և զինքեանս բարեբոյս և վշտակիրս. սակայն բանք Ճշմարտից դեղ են ոգւոց, թէ և զառաջինն ընդդէմ երևին. և ընդ նոյն ցաւակցելով զհիւանդութիս նոցա բառնան ։

ԺԱ ։

Բամբասել սկսանէ միանգամայն տունկք 'ի միասին զընկուզի՝ և ասեն. ուրշտ ես ամենևին և տմարդի՝ կծու և չար, զպտուղ քո բերես անուտելի. որոց պատասխանեալ ասաց, ոչ ապաքէն նման ձեզ առնեմ, զի ո՛ ոք 'ի ձէնջ նախ քան զժամանակին տայ զպտուղ իւր յուտել. և նոքա ասեն, 'ի մէնջ ուտեն յառաջ քան զհասանիլն, իսկ դու ճշգրիտ պահես մինչ 'ի կատարած. և նա ասէ, սակայն և որդ ամենեցուն ընդարձակ եմ մարդկան և թռչնոց. ոչ նման ձեզ անկարգաբար տալով.

և

և այսու արդարացաւ 'ի վր̃ նց̃ · մա-նաւանդ զի բազումք 'ի ձէնջ զնոյն գործեն, առանց երկրորդելով · և զի անբողջան ուտելով 'ի ժամու' մեր-կանամ զուրջութեն :

Ոչինչ է տարակուսելի և այս ա-ռակ, զի բարեկարգք միշտ բամբա-սին յարբշռաց իբրև ուշտք, զբարե-մատակարարութիւն պնդութի կոչելով · և անգէտ կերողացն զստամն' դա-նութի · այլ նա 'ի դէպ ժամու տալով առատութե' բարեմիտ երևի, և այսմ զբաժզուման ունի վկայս · իսկ վայրա-պարք անժամ ծախելով զինչս' 'ի ժա-մու ոչ ունին տալ, և յայնմ արբշիռ երևին :

ԺԲ :

Յանմտից ոք եհար զյունտաղ' կարծելով զնա դժնիկ · որոյ զայլրա-ցեալ առաց, ո՛ անապօրոյն' զտունկ 'ի պտղոյ արժան է ճանաչել, և ոչ 'ի տեսակէ :

Նշանակ բերէ առակս զանըմբարազ դատողս' զթագաւորս և զիշխանս և զդատաւորս և զառաջնորդս եկեղեց-ւոյ'

ւոյ՝ զնա յանդիմանելով, զի անփոր-
ձապէս դատապարտեն. զի ճշդիւ
դիտելի է 'ի գործոց նց. ըստ որում
տէրն իսկ ասաց, եթէ 'ի պտղոյ նց ծա-
նիջիք զնա, և ոչ 'ի տեսլենէ կամ 'ի
համբաւէ դատել. որով և բազում
վնասս գործի՝ զբարիս իբրև զչարս
խոշտանգելով։

## ԺԹ.

Մերձ առ սաւսի առաջագանէին երկ-
րագործք զբամբասկենիւն, և մի-
մեանց պատուիրէին զգուշանալ՝ զի
մի զծառս կոխեսցեն զբամբասկե-
նիս. և լուեալ սաւսոյն զչարացաւ՝
կոչելով զնա ծառ. ասաց՝ եթէ զի՞ արդ-
ինձ համանուն կոչի դա ծառ, զի ես
այսքան ստուար և բարձր եմ, և ըզ-
բեղմ տեղիս ըմբռնեալ ունիմ։ Եւ-
լու 'ի լուր ոչ զանգիտեալ՝ պատաս-
խանեաց բամբասկենի ասելով, բարձր
ես և ստուար, սակայն անօգուտ.
ոչ 'ի շինուած և ոչ 'ի պտուղ և ոչ
յայլումեք պիտելի. այլ թանձր ունե-
լով ստուեր, յորմէ բամբասողս մանա-
ւանդ՝ քան եթէ գովիս. իսկ ես եթէ
պէտ

պէս փանաքի և տկար, այլ բազմա-
շահ. ոչ միայն մեծատանց՝ այլ և
աղքատաց, 'ի տածել 'ի քաղել 'ի
գործել. և լինիմ հանդերձ որպէս
զարդ յոչխարաց՝ և զլուշ 'ի կտաւէ՝
և զմետաքս յորդանց. յորոց և դու
ոչինչ ունիս բնաւ՝ բայց միայն խո-
զակ. և այսու յանդիմանեալ լը-
ռեաց:

Բանք առակիս զպարծանս մեծատունս բռնացուցանէ զմարդկեղէնս, զոմանց՝ զոր ունին 'ի տեսակ և 'ի հասակ, և պատուհէին բազում մանգամանօգուտ կենցաղոյս՝ նմանապէս և հոգևորացն. զայլս յակամնէ խոտեն զտկարս և զկարձս հասակաւ, որք և այլ-տանիք իցեն 'ի բազում իրս մարդկան և փարթամացուցիչք. որք և յիրաց անտի գովին, և նոքա յանդիմանին 'ի սնոտի գործոց:

Ի:

Տրտունջ եղև տնկոց ամենեցուն զթագաւորէն իւրեանց՝ թէ առաջօք բաշխեաց զիւրաքանչիւր պատիւ. զի զոմանս 'ի տունս բնակեցոյց՝ ոմն ըզ-նա-

Նարինջ , և զոմանս 'ի բուրաստանս և զոմանս յայգեստանս՝ և պատուէին 'ի մարդկանէ . և զոմանս իբրև զանարգս 'ի վայրի զպտղաբերս , որ և հերակուր լինէին խոզից և կոխան գազանաց . և զայլս 'ի յանտառս՝ ոչ ընմայրս զաւրդլի և զնաձի , և որ նմանն սոցին . զոր հարկանեն անխնայ , և անարգ քարշանոք 'ի շինուածս և յայրումն պատրաստեն : Այս նոր լուեալ՝ կոչեաց զնո , և սաստեալ 'ի մի նոյն ասէ . ոչ գիտէք եթէ զխորհուրդթագաւորին ոչ ամենեքեան գիտեն , ոչ և ոչ զնոյն . և թէ այլ ևս յանդգնիք՝ մեծագոյն ունիք պատուհասել . և նոքա ամենեքեան զարհուրեալք լռեցին :

Հանձնարարէ զմեզ լինել կամի առակս , և հնազանդ նմա և թագաւորաց , և ոչ տրտնջել զանձնառ խնամոցն նմա՝ և ոչ զծածուկ խորհրդոց թագւորաց . այլ իւրաքանչիւր գործոյ ուշ ունել : Որ ոչ եթէ վայրապար ինչ եղև կարգել 'ի թագաւորէն տնկոց՝ զնո . ոչ և ոչ նմա՝ և ոչ թագաւորք անօրինեն վայրապար , զի

զո-

զոմանս յայգիս կարգեաց 'ի պտղաբերաց, և զոմանս 'ի բուրաստանս, և զոմանս զհամացեղս յանդաստանս, այլ պիսի պատճառաւ՝ զի զազանաց և անասնոց կերակուր լինիցին, և մի՛ նեղեսցեն զմարդիկ զտածեալս 'ի նոցանէ՝ ուտելովն. և թէ 'ի տունս ամենեք տնկեցան՝ անուտելիք մանաւանդ են, ուստի համարին մարդիկ լինել 'ի զբօսանս տեսլեան և 'ի բուրումն, զի կերակուր է ընդնկաց բուրումն, և տեսլեան 'ի զուարճացումն՝ որպէս բուրաստանք. նա և 'ի բժշկութի. և և այլ թէ անտառք՝ 'ի շինուած և յայրումն պատրաստեցան. և այս նախախնամաբար, զի մի՛ լիցի՝ որ զպտղաբերս հարկանիցեն 'ի շինուած և յայրումն: Նա յապիսի և ամենայն անօրինք և թգ̃ւորաց՝ զանխուլ և անքննելի դատաստանաւ. և թէ ոք յանդգնի անխորհրդաբար ասել, դատապարտի:

ԻԱ:

Երթեալ մն̃ կարօտ 'ի ձմեռնայնի 'ի դրախտ՝ քաղել և ուտել պտուղ. և տեսեալ զպտղաբերս իբրև զզօսա-

ա̃ ցելս,

ցեալս, սկսաւ Թշնամանել և տըր-
տնջել, և հարկանել և ասել. ընդ-
դէ՞ր ոչ ունիք պտուղ՝ զոր կերայց և
յագեցայց, զի և ոչ մի ունիք պտուղ
մրգոյ. և առաւել ևս զչարէր: Այլ մի
ոմն 'ի ծառոց քաղցրութ̄ե և հաւանա-
կան բանիւք ասաց. մի՛ տրտմիր ա՛յր
դու, և մի՛ վայրապար բամբասեր՝ զի
մեղանչես. Թէպէտ և կարօտեմ ես՝
զիա՛րդ ո՛չ գիտես Թէ 'ի ձմերայնի
հանգչիմք և յարմատս մեր զօրա-
նամք, զի կարասցուք 'ի գարնայնի
ծաղկել, և յամառայնի մտուցանել
պտուղ, և յաշնայնի հասուցանել և
կերակրել. ընդէ՞ր ոչ եկիր՝ յորժամ
ծորդ և անսասունն և գաղտնն վայելէր
պտղովք մերովք. դու յամենայնի և
յամենայնժամ պատրաստ ես 'ի
յուտել, այլ մեք ոչ. երթ՝ և 'ի
դէպ ժամու եկեալ կերիցես ո՛րչափ
և կամ իցէ քեզ. և գնաց այլն
յուսով սասացելոցն:

Պէտք առակիս զՀիւրս և զաղքատս
խրատէ, զի յանդէպ երԹեալ ժա-
մու՝ զմեծարանս խնդրեն հիւրք
պատրաստաքս յուտել և 'ի հանգչել, և

աղքատք զպէտս լնուլ կարօտութե՟. այլ ոչ նմանեաց ասպնջականք պատրաստք հանդիպին յում ժամ. և կե՟ բարեգործք՝ յողորմութի՟ ։ Իսկ յամբաստանելն նոցա և ՚ի տրտնջելն՝ չէ՟ արժան զչարանալ. այլ քաղցրութ՟ պատասխանել և զպատճառս անպատրաստութե՟ն ճառել, և զայլ ժամու զառատաձեռնութի՟ն. զոր բաղումք գտին զհանգիստ և զողորմութի՟. և որքան հնար իցէ առձեռն պատրաստութ՟ ընդունել. և խոնարհութ՟ զպէտս նոցա լցուցանել խոստանայցէ. և սիրով և յուսով զնոսա դարձուցանիցէ ։

## ԻԲ ։

Խոհեմ ոք եհարց զծառս, եթէ զի՞նչ են պատճառք՝ զի որքան բարձրանայք, այնքան արմատս ՚ի խոր ձգէք. և նոքա ասեն՝ խոնարհական զօրով զի՞արդ ոչ գիտես՝ եթէ ոչ կարեաք այսքան ոստս բառնալ և ընդդիմանալ հողմոց բռնութե՟, եթէ ոչ զարմատս ՚ի խոր՝ և բազմոստս առնէաք. տեսանես զեղբարսն մեր ըղ-

հա

հաճարի և զփիճի, զի ո՛չ են բազմ_
ատք. և ո՛չ ընդդիմանալ հողմոց կա_
րեն, 'ի խոր արմատս ո՛չ ունելով։
Նշանակէ առակս՝ որք կամին ուսա_
նել հաստատութ̃ի իրի զհոգևորաց
և զմարմնաւորաց. զի արժան է հաս_
տատուն հիմամբք սկզբնաւորել՝ զի
մի՛ 'ի փորձութ̃եց անկանիցին բնա_
ւորաց՝ 'ի դիւաց կամ 'ի մարդկանէ.
և բազմաբեղուն զիրսն առնիցեն.
այլ եթէ ծանծաղ և 'ի վեր 'ի վե_
րոյ սկսանիցին՝ դիւրակործանք լինի_
ցին, որպ̃ ա̃ն ուսուցանէ առակն։

## ԻԳ։

Աջենիք քաղցր և դառն՝ եղբարք
գոլով համամարք և ո՛չ համահարք.
և նեղեալ 'ի դառնուէ եղբօրն՝ ա_
ռար իւր բարեկամ և եղբայր զկաւ_
կենի, բարոյակից զնա գտեալ ըստ
երկուց ողակաց. և 'ի բազմաց մե_
ղադրեալ՝ ասաց. որ ըստ կամաց ի_
մոց է՝ նա է իմ եղբայր. և ոչ ո՛ք կա_
րաց ասել նմա ինչ։
Բացայայտ իսկ է առակս. զի թէ_
պէտ հարազատք իցեն եղբարք, և

 ընդ_

ընդդէմ միմեանց պատահին բա-
րուք՝ հարկաւորաբար քակտին 'ի մի-
մեանց. և զօտարս բարոյակիցս լաւ-
համարին. և թէպէտ մեղադրին՝
ոչ ոք կարէ արդարանալ 'ի վր նոցա.
որ պարտ է ոչ այնպէս յոռի գտա-
նիլ, ոչ զի այսպիսի կարգի իցէ լու-
ծումն:

## ԻԳ.

Մեծաբանեալ սնափառէր կաղնի՝
առել զինքն թագաւորազն յաղագս
հաստակին՝ հզօր զօրութ(եա)ն, իբր 'ի լի-
բանանս բնակեալ հսկայազօր. և
խորհէր առ աթուր զամենեսեան
հարկանել. իսկ արքայկաղնի ոչ ժու-
ժեալ յանդիմանական վարեցաւ առ
նա բանիւ՝ ասելով. բազումք հա-
մանմանք քեզ ոչ պարծին. սակայն և
ոչ զանխլանան սրտաք նոցա՝ 'ի պտղոյ ա-
ռաւել՝ քան 'ի հասակէ գովեալք.
զի՞ այդպէս յանդգնիս. ես և ոչ մի
ինչ եմ, բայց մարդիկ զպտուղ իմ
ուտելով՝ և զիս ևս յարգեն. այլ
պտուղ քո 'ի դարմանս կայ խոզից.
և զայս ասացեալ լռեցուցանէր՝ ծի-
ծա-

ծաղելի զնա ցուցեալ ։

Մ՚իտք առակիս յայտնի է, խրատե-լով զսնապարծս որք յազգք և 'ի տե-սակս և 'ի զօրութիս պարծին. ոչ ու-սեալք յիմաստնոյն՝ եթէ գովեսցէ զքեզ ընկերն, և մի՛ դու. այլ նոքա զխոստելին առ. ինքեանս թաքուցա-նեն, սակայն 'ի գիտողաց յանդիմա-նին. ոչ ունելով պիտանի ինչ կեն-ցաղոյս՝ նա և ոչ հոգևոր ինչ. և որք 'ի նմանէ այպանին, բազում անգամ քան զնոսա լաւագոյն գտանին. և ընդունելիք մարդկան լինին. և նո-քա անարգ և ծիծաղելիք՝ 'ի բաց խոտին ։

## ԻՆ ։

Բողոք առ միմեանս կալան՝ ծառա-յի և հաւամրգի. քանզի և նոքա տունկք գոլով՝ սակայն պակասամի-տըք. և տրտնջէին ասելով, զիո՛րչ-նման մեզ լինելով մրտի տեսղեամբ՝ և փանաքութե̄ վարդ, և այնքան պատուէին՝ զի 'ի տունս բնակեն Ձա-խագունից՝ և յեկեղեցիս. և մեք ա-նարգ լինիմք գործիք՝ զաւելորդս



տանց

տանց և գռեհից մաքրելով. զայս տե-
սելով՝ զանուշահոտութիւն նոյն և զբր-
ժըշկութիւն և զպիտանութիւն Թագու-
ցանելով, և զհամեստութիւն ին-
քեանց առաջի դնելով՝ զսմբաստա-
նութիւն աճեցուցանելին :

Այսպիսի է առակիս տեսութիւն. քա-
ղաքք նորաձեւոք 'ի կրօնաւորաց
յորժամ ըստ պատշաճի նոցա 'ի խո-
նարհագոյն գործ ինչ որոշեն, քրթ-
մնջեն, թէ մեզ նման ձեւով և
այլք են կրօնաւորքն, զիարդ պատ-
ուիրն և 'ի գործ պարկեշտ կան՝ և
յայսքան անարգութեան մեք. և զնոյն
արժանի պատուոյ զվարս Թագու-
ցանեն. զի ոմանք քահանայք իցեն.
և զնմանութիւն տն վարուց ունին նը-
մանն վարդի. և այլք 'ի մանկութէ
կուսութբ անուշահոտեալք նման
մրտի. իսկ նոքա անգիտանալով զին-
քեանս՝ վայրապար ամբաստանեն :

* Ոքմն 'ի գիտելեաց և յանգիտե-
լեաց Թողաք իբր համազօրս յօրէ-
նակս և յառակս. և զառեալ նշա-
նակսդ չափաւորապէս համեմատե-
ցաք՝ պատճառս տալով տեսողաց բա-
նին

նին նմանապէս զթերին լցուցանել ․ և արդ՝ փոխանցելի է մեզ և յայլսն ; այսինքն՝ ՚ի բոյսս ծաղկանց և սերմանց և բանջարոց , և ՚ի նոցանէ չափաւորապէս զգաղափարսն առնլի է բարոյապէս և առասպելօրէն ․ և զի թէպէտ անըմբռն ասացեալքդ կարծի , սակայն թանձրամտաց առաւել ախորժելի երևին , որոյ աղագաւ զսակաւդ յօժարեցաք գրել ։

---

## Ի. Օ. ։

Տեսեալ ապա այնուհետև բուսոց՝ թէ բարուոք կարգաւորութ̃ վարին , հաստատելով ինքեանց թագաւորութիւն տունկք , նախանձ բերեալ ընդ նմ՝ կամեցան և ինքեանց կարգել թգ̃րութիւն ․ և եղև ոչ սակաւ հակառակութիւն , զի ոմանք ասէին շուշան լինել , և այլք՝ զախորիզան ․ և բազումք զհամասպրան , և ամենեցուն համոյ թուեցաւ լինել համասպրանն ․ այսպիսի յեղանակաւ ․ երկոտասան մասն է երկրի , և երկոտասան ոստ է համասպրանին , և

պայծառ է նմա թագաւորել՝ զի ա՟մ
տիրեսցէ աշխարհի. մանաւանդ զի
մեծամեծ ունելով զօրութիւն բժըշ-
կութեան՝ զի զհիւանդս բժշկեսցէ, և
զայլս քաջամարտս առնիցէ, և 'ի մերոյ
ծովու զնաւս տացէ, և իմաստութ՟ն
զորդէտս լցուսցէ: Նա այս ամենե-
ցուն հաւանութ՟բ թագաւորեաց հա-
մաստարքանն. և կարգեաց նոյ կարգս,
զի արար զընտաբոյս ծաղկանց 'ի ըզ-
բօսանս և 'ի բժշկութիւն, և զբան-
ջարս դալարիս 'ի կերակուրս և 'ի
դարմանս, սոյնպէս և զսերմանս ա՟մ.
և զպտղատուեաց ամենայնիւ զտուն
թագաւորութեան իւրոյ. և խնդութիւն
եղև բնաւից.

Նմանայք աստակիս ծանուցանի այս-
պէս. Տեսեալ ազգի մարդկան զերկ-
րաւորս թագաւորութիւն, ըստ կար-
գի և զերկնաւորն խնդրեին թագա-
ւորութիւն. բայց ոմանք կարծեցին
զարեգակն, և այլք զլուսին. և
այլք՝ զայլ ինչս բազումս: Նաև յե-
րևել բանին ա՟յ և 'ի ստանալ երկո-
տասան առաքեալս, և առնելն զնը-
շանս և զբժշկութիւնս, ծանեան ըզ-

Ճշմարիտն , զինա լինել Թագաւոր աշխարհի . և 'ի Թագաւորելն իւրում՝ զամենայն արար աւետարանիչս , ոմն զախտիզամն՝ երկս ունելով կենդանութի յարմատ , զի և նա զբրնաւորական և զգրաւորականն ընդ ինքեան ունի զօրութի . և զամենայն հովիւս և վարդապետս՝ 'ի զբօսանս հոգւոյ և 'ի բժշկութիւն , 'ի կերակուրս քանզի նմ՝ և 'ի սերմանս , 'ի խորհուրդս և 'ի միտս ։ Իսկ ըստ կերպարանի շուշանի զնմանս կարգեաց զեկեղեցի ընդ իմաստութ՛ աւետարանին ծաղկեալ , որպէս նա 'ի գետն Եփրատէս և յայլն , և եղև ուրախութի մեծ ամենեցուն 'ի Թագաւորելն նորա ։

## ԻԱ ։

Ուսանել ոմանք 'ի բաւոց կամեցան՝ թէ զինչ իցէ պատճառն զի Թագաւորն մեր զանձն իւր այնքան ծածկէ , և զայլն նմ դիւրապատահս արար մարդկան և բժշկաց , որոյ աւուրքն գրեթէ երեսուն յայտնի ոչ լինելով , Թէպէտ և այլ ժա_

անակն անզխտելի է . և զառեալ 'ի բժշկաց՝ այնուհետև 'ի պէտս վաքի, ընդ ինքեամբ անյայտ և զախրիզաննն արար՝ լաւսով նշանի 'ի գիշերի գտանիլ . Իսկ նա գխտացեալ զխորհուրդս նց̃՝ և ասէ՝ գխտէք զի միանգամայն անյայտ ոչ լինիմ . այլ երևիմ աղօթիւք և պահօք խնդրողացն . Նմանապէս և զախորիզանն աբարի, զի մի դիւրարհամարհելի լինիցիմք՝ դիւրագտանելի լեալք . և նոցա ուսեալք՝ ուրախ լինէին գոհանալով :

Րաակս զայս ինչ նշանակէ . Տարակուսելի է ոմանց խորհուրդն քմի, զի երեսուն ամ անյայտ եղև, և ապա յայտնեցաւ՝ 'ի բժշկուն վարեալ առաքելովքն . այս գխտելին է՝ թէ և անժամանակ է . իսկ զայլ որբոց բժշկունս ընդարձակ արար, զիւրն ծածկելով, և նուքօք վարի : Ընդ իւր անյայտ և զաւետարանն արար՝ 'ի գիշերի ամբարշտութենն յայտնելով . իսկ նախախորհրդագէտ գոլով ուսոյց թէ և ոչ բնաւ ծածկիմ ոմ̃ և գխտէք . այլ աղօթիւք և պահօք երևիմ

բևիմ խնդրողաց . և այս յայտ իսկ է . սոյնպէս և զմիտս աւետարանին աղօթիւք և պահօք և սրբութ̄ գտանեմք . զի մի դիւրաւ գտեալ որպէս հրէայքն՝ արհամարհիցեմք . և ոչ բնաւին անտես եղև , զի մի անյուսութ̄ տրտմիցիմք . այլ այսուիկ ուրախ եղեալ գոհանամք :

## ԻԲ:

Ըստ գարնանային յեղանակի՝ երանեկին ոմանք զգեղեցկութի մանիշակի . և նա ճշմարիտ կարծեալ յանմտաց զասացեալն , և առաքեաց առ , շուշան հրեշտակ՝ առնել ընդ նմա բարե-կամութի , վ̄ս նմանութեանն կարծեացն . զի գովիչքն՝ նմանն և ասէին շուշանի . և նա պատասխանեալ ասաց՝ եթէ դու այժմ ծաղկեալ զարդարիս , և ես տակաւին իբր գոսացեալ և անյայտ . ներեա՛ մինչ և ես ծաղկեցայց . և յանսալ նմա յետ ոչ սակաւ աւուրց թառամեալ գոսացաւ մանիշակ . և՛ի ծաղկիլ շուշանին բնաւին անյայտ կայր մանիշակ :

Նոյնպէս ցուցանէ առակս ըղ-
փառս մարդկայինս սնոտի լինել,
թէպէտ յանմտաց երանին. և պա-
կասեալք 'ի մտաց կարծեն՝ իբրև
մշտնջենաւոր նման սրբոց ունել
փառս, և այսու հաղորդիլ կարծեն
և սրբցն փառաց, և ունեալք 'ի բա-
նից ընտրելոց առ այժմ անյայտ լի-
նել փառաց իւրեանց. եթէ տեսա-
ցեն մարդկայինքս՝ մինչ 'ի ծագել
փառաց նոցա, կցորդութի է 'ի մի-
մեանս. սակայն 'ի պայծառանալն
նց՝ նուաղին ամ երկրաւորքս, և
յանդիմանին ունայն լինել:

ԻԹ.

Փենինա զանձն որքասեր ասէր լի-
նել, և ամբարհաւաճէր 'ի բնաւից
իբրու զի ընդդիմանայ դիւաց. ոչ
գիտելով եթէ 'ի թագաւորէն իւր-
մէ զօրանայ. և յինքն ամփոփեալ
արքայի զիւրն շնորհ, և գտաւ ու-
նայն քան զբազումս. վա զի ծաղիկք
ամ 'ի պէտս վարէին բժշկաց. իսկ
նա՝ և ոչ բնաւ:

Ունի ինչ խորին օրինակ, զի ամ-

բար-

բարտաւանին առանց 'ի քահանայից և 'ի կրօնաւորաց՝ յորժամ տէր 'ի ձեռս նց̃ առնէ բժշկութիւն, և կամ մերժէ զդևս․ ոչ գիտելով եթէ ոչ նոքա՝ այլ շնորհն տն̃ որ ընդ նոսա․ և յորժամ առնու զիւրն տր̃՝ լինին և ոչ առ մի ինչ պիտանացու ։

## Ե ։

Եղև գժտութիւն երբեմն 'ի մէջ լեռնականաց և դաշտականացն ծաղկանց․ զի հաւրուտն և մաւրուտն և ասպուզանն և այլք այսպիսիք ոչ տանէին պարսաւանացն դաշտականաց՝ արքայածաղկին՝ կակաչին՝ և այլոց նմանեաց․ զի ստգտանէին իբրև տմարդիք և անիմաստք, և զինքեանս հանճարեղս և 'ի բժշկութիւս պատրաստս, և 'ի տեսիլս՝ առձեռն ։ Լու եղև այս յականջս թագաւորին իւրեանց, կոչեաց զն̃ս և սաստիւ ասաց, ո՞չ ապաքէն ես վիճակեցուցի զձեզ այսպէս բնակել․ զի ոչ կարէք զկարգ ձեր փոփոխել թէ և կամիք․ զի ետու պէտս ունել միմեանց․ զի լեռնականք զդաշտականաց ոչինչ

լնուն

ընուն զտեղի , և ոչ դաշտականք ըղ-
ջեռնականաց , ոչ 'ի բժշկութիւնս և
ոչ յայլ ինչ . և այսու համոզեաց ըղ-
նոսա ։

'Ի միտ տայ առնուլ առակս զնա-
խախնամութիւն այ ամ ուրեք՝ ըստ
կարգի մատակարարել զլեռնայինս
և զդաշտայինս . և զի զմիմեանց ոչ
ընուն զտեղի , և պէտս ունին իւրա-
քանչիւրքն միմեանց . և զի ոչ է
պարտ պարսաւանս ունել առ այնո-
սիկ . այլ ըստ կարգի արարչին մե-
ծարել զընկերս և զեղբարս ։

## ԼԸ ։

Աղաղակէր երբեմն խնկողկուզին՝
թէ ես պատճառ եմ սրբութեն քա-
հանայից . և զոմն ստգտանէր զծա-
ղիկ , զի արմատ նր առիթոդիտակա-
նին է շարժող . և զայս լուեալ քա-
հանայ ոմն չարչարեալ 'ի ցանկութ
և եդ զնա 'ի հանդերձ իւր . և ոչինչ
օգտեալ թշնամանէր զխնկածաղիկն
իբրև զսուտ ոք . և նր դարձուած
արարեալ ասաց , զի 'ի հանդերձ քո
և ոչ 'ի սիրտ զիս եդեր , յաղագս ո-

րոյ

րոյ ոչինչ օգտեցար . և լուեալ այրն լուռ եղև ։

Ի հանձարոյ է օրինակս , զի զողջախոհութիւն ոչ մարմնով , այլ հոգւով արժան է ունել . ապա թէ ոչ՝ անշիջանելի է ախտ ցանկութեան . և չէ պատշաճ զ՚ի քարի եղեալս յայ՝ չար կարծել ։

## ԻԲ ։

Եղև հարսանիս արեգական , և առաքեաց հրաւիրեաց զծաղկունսն առ հասարակ . զի ըստ զուգաւորութեան , և անդ ՚ի միասին ՚ի հարսանիս դայցեն . և լուեալ ձիւնածաղկի , և այլոց այսպիսեաց՝ փութացան քան զբազումս ժամանել . և ՚ի ժողովին այլոց զի ՚ի միասին վայելեսցեն , ոչ երևէր նա՝ զի խորշակահար եղեալ ցամաքեցաւ . և առ հասարակ սեռք նոր պատուեալ պսակեցան ։

Միտք առակիս այսպիսի է . զի արեգակն՝ է տր . և հարսանիս՝ ժամանակ չարչարանացն , և հրաւիրակք՝ առաքեալքն . զի զկնի աւետարանին և անդ . ծ յերկրորդ գա֊

լըս֊

զրստեանն 'ի միասին պատկերացին . իսկ ծանծաղք՝ և յօժարամիտք եղեալ ուսեալոց բանսին , սակայն 'ի փորձանս անկանն՝ և ոչ կարացին ընդդիմանալ . և պատկեռալ այլք՝ ինքեանք մնացին անպատակք ։

Լ Գ ։

Գինդածաղիկք և կորնգան և խոլորձ՝ առուոյտ կապոյտ և սէզ , և նմանք սոցին ծաղր եղեալ գէթնկ՝ ասէին , եթէ զի՞ է՝ զի մեք զուարճացեալք կամք . և նա ծիւրեալ դեղնութբ . և լուծեալ պատասխանեաց . մ՞ զի անմիտք էք և անհրկեւզ ոչ խորհիք եթէ մ՞ մեր սուրք որեն գերանդեաց . իսկ ես խոկալով յայսոսիկ՝ զարհուրեալ դեղնիմ ։

Յայտնապէս ցուցանէ առակս՝ թէ յոյժ անմիտք են որ մոռանան եթէ բնութբ մահկանացու է ազգ մարդկան . և պատրեալք յերևելի 'ի մեծութեն՝ ծաղր առնեն զվարս երկիւղածս և զկրօնաւորս . ուստի յանդիմանին 'ի նոցունց անմտութն նոց ,

և

և ինչեանք գիտելով զապականումն երկրաւորացս՝ ոչ պատրին, այլ ձըռն-չեալ և երկխուղին̂ միշտ ներքևին ։

Լ Դ ։

Մոլկացեալ բուսոց թէ ո արդեօք յառաջապահ մեզ կայցէ ․ և խրոխ-տացեալ կառք և նորին նմանեաց՝ ասեն, թէ մեք՝ հարկանող գոլով, մեզ լինել արժան է ․ և 'ի կարգիլն՝ եկեալ էշք և ուղտք՝ կերեալ և ա-ռաւթուր հարեալ ․ գոչացեալք և տարեալք 'ի հողմոց եղեն ։

Ընդդէմ կայ առակս հպարտ մտաց, որք յուսան 'ի լեզուանութիւնս իւ-րեանց ․ իսկ գիտելի է, զի հզօր է զօրութիւն քան զլեզու ։

Լ Ե ։

Նախատեցաւ եղեգան ծաղիկ և նմանք նր, պաշտօնեայ լինել արե-գական ․ և նր ձգեալ զձեռն յարևն՝ երդուաւ արեգական թէ ոչ եմ ։

Նարէ առակս զայնոսիկ՝ որ 'ի չա-րիս յայտնիս յանդիմանին, և հնա-րին թագուցանել ․ որով յանդիմա-նին

նմն յաւէտ քան թէ ծածկլին ։

* Համառաւուք այսմ զանց արարաք ․ Եկեսցուք 'ի սերմանս և 'ի բան- ջարս ։

## Լ.Օ.

Ախտիւք փառաւորութե̃ զանձինս պատրաստէին սերմանիք իշխել 'ի վր̃ մտմեանց ․ և պերճացեալ զարդք ոմ̃ վալթմնաւոր ․ և կորեակ՝ որպէս զհարիւրաւոր ․ իսկ ցորեան լաւ և եթ կայր ․ և տեսեալ արքայի նոցա զխոնարհութի̃ նր̃ , զի որք անասնոց և գազանաց մանաւանդ են կերա- կուր՝ զփմեամբք ելանեն , և նա համդարտեալ կայ , մերձաւոր իմ- քեան զնա արար ։

Նշանակէ առակս՝ ոչ այլ ինչ զօրու- թի̃ անդամ լինել քմ̃ , քան թէ խոնարհութի̃ ․ ը̃ որում և ո̃ր է- մուտ 'ի բնութիս ուսման աղագաւ ։

## Լ.Ի.

Իբրև ծանեաւ գարի , եթէ խոնար- հութի̃ հաճոյ եղև ցորեան , եղև

գըև

գլխանկորեալ և խոշորազգեստ , զի յարգոյ և նա եղիցի ։ Եւ տեսեալ արքային՝ յանդիմանել մանաւանդ՝ քան թէ մարմին իւր տանել՝ ասելով, թէ ձևով միայն խոնարհիս . իսկ յորովայն մտեալ, բազում առնես փրքացուցն , նշանակ ամբարտաւանութեան ։

Զայս յինքեան ունի առակս , զի բազումք գիտելով զխոնարհութիւն գովելի և մեծարաւոր մն , կերպարանեցան լինել , այլ ոչ հոգւով . ուստի խոստին , ոչ ունելով յոգի , քանզի խոնարհութիւն՝ առաւել ևս ամբարհաւաճեն ։

## ԼԲ ։

Զնոյն կրեաց և կորեակ ասելով, թէ գովելի է խոնարհութիւն , ինձ յաւէտ մեծաւորիլ մն ՚ի դէպ էր . զի այնքան եմ խոնարհ , մինչ զի ՚ի պատուՃողացն ձեռանէ սողոսկեալ՝ անկանիմ յերկիր . այպանի և սա իբրև զանմիտ՝ լինելով կերակուր անմտաց , ոչ գիտելով զպատիճ անձին ։

Իմաստք առակիս այսպիսի են՝ զի խո-հականութեան խոնարհելն՝ տիրապէս խոնարհութիւն է, իսկ անիմաստա-բարին՝ եղծումն. ոչ գիտելով զորի-նակ խոնարհութեան զժամանակի և զտեղւոյ՝ ըստ զանազանութեան։

## ԼԹ.

Դաձար՝ և մնեւ ՚ի միասին ուրախ լինէին. իբրու անդրժելիք էին թռչ-նոց. եկեալ գազանաց և անասնոց, կերեալ և կոխան արարեալ, և զղ-ջացեալ ասեն, անխնայելոյ աղաւա-ղանձինս պատեցաք. և այժմ վարկ-պարազի սպականեցաք։

Օանազորոյնամն յանդիմանէ առա-կըս, զի ՟Ը կարգի յաղքատս ոչ մա-տակարարեն. իբրու գազանաբա-րոյից և անմտաց ամբարոք նոյն լինին. զղջմանն, այլ ոչինչ օգտին։

## Խ.

Սարմնոյ մեծութեամբ՝ բակլա և սի-սեռն պարծէին առ հաստ կտաւա-տի, և կնձրթան. և Նոքա ասեն, փոքր եմք հասակաւ, սակայն բեղմ-

նա-

նաւոր , զի ծառայեալ և տանջեալք մարդկան , լինիմք կերակուր և նիւթ բուսոյ . իսկ դուք թէ և կերակուր , այլ ոչ եւ օգտակար , և ոչ նիւթ բուսոյ :

Ընդունի և ինչ ոչ գովութիւն առակս զմարմնոյ առողջութիւն յորժամ զնոյն ընդ ինքեան ոչ ունի զպատուիրանին : Իսկ փանաքեաք յոյժ գովելիք , թէպէտ տանջանօք ժամանակենիւք չարչարին , պայծառացեալք բուսով պատուիրանին . և միշտ կերակրելով զաղքատս :

## ԽԱ :

Ընկաւ 'ի պատառէ կերակրի հատ 'ի սիսեռան , և այպանեցաւ 'ի բակլայէ՝ որպէս զերկչոտ , որում ասաց . ոչ եմ երկչոտ , այլ արի :

Ցուցանէ առակս , յորժամ յապականչաց կենաց մերոց զանգիտել , սակայն արիութեամբ 'ի նցէ փախչել :

## ԽԲ :

Նմանապէս անկանեցաւ և 'ի նը-մանէ բակլա . և պատասխանեաց .

թէ

Թէ ո՛չ երկնչելոյ աղագաւ եմ տափականեմ՝ այլ խոնարհութեան սակս, զի թէ այսպէս ձեւանամ՝ և մարդիկ ազօրէօք ջաղջախեն զիս, զի՞նչ եթէ այսպիսի ոչ էի իսկ։

Եւ յայսմ առակէ խրատիմք՝ յանձն խոնարհ լինել, անպարտաւ և անպատճառ։

## ԽԳ.։

Ի չափաղէ զերծեալ՝ ի ձեռանէ ու-լեռն՝ գնտատեսակ գոլով ցնդի. և Նր զայրացեալ ասէ՝ երթ կերակուր լեր թռչնոց. որում ասաց, բաւական է ՚ի կապձոյ ՚ի հուր և ՚ի ջուր տանջել, ես պարզաբար կերակուր ախորժեմ թռչնոց լինել։

Միտք առակիս այս է, զի միջոց է ընդ տանջանս՝ և ընդ տանջանս. ընդ զրկանս՝ և ընդ զրկանս. յորոց եթէ պատահի, հարկաւոր է զհանդարտագոյնն ընտրել ՚ի հզօրագունէն, և ՚ի մեծամեծացն՝ զփոքրագոյն։

## ԽԳ։

Միատեսակ գօլով տապն՝ իբրև ըղ-կեղծաւոր, պատէ զլովխան՝ սպիտակ մարմնով և սևս բերանիւ կոչելով. և նա արդարանալ կամելով ասէ, սպիտակ ուրախացելոցն եմ, և արջ-նատեսակ սգաւորաց. բայց 'ի փոր-ձոյ ծանուցաւ՝ մի զգնութիւն ունե-լով փքացուցիչ որովայնի փարթա-մաց և աղքատաց, և յայլմն նմա-նապէս։

Յայտ իսկ է միտք առակիս՝ զի ձևա-նան ոմանք, այլ ոչ զբարոյսն կարեն փոփոխել, զի յայտնին ներգործու-թեամբ։

## ԽԴ։

Անհանդուրժելի եղեալ այսմ յան-դիմանութեն, և զնորայն առակել կամեցաւ զգնութեն լովկաս, ասէ՝ չար ամենևին ես, հանդերձ զձձու-թբ, վնասիչ յորովայնի և ջլաց, և դժուարերազիչ. և վատնիչ լուսոյ աչաց։

Օ այս՝ առակս նշանակէ, զի ան-

միտ

միտ կեղծաւորք՝ զկեղծաւորսն յան-
դիմանեն , և 'ի միմեանց հրապա-
րակ եղեալ ծաղր լինին 'ի մէջ մարդ-
կան ։

## ԽԶ ։

Աղամեալ կայր մաշ 'ի դարմանս հիւանդաց , և սնափառուէր . և այլոց սերմանց և հնդոց ոչ տարեալ՝ ար-դանեն զնավաւ , թէ իշխանն մեր՝ որով կեան հիւանդք՝ և առողջք՝ ոչ այդքան պարծի , և դու ծանծաղամիտ գոլով , ըստ որում մաշ կոչիս , փքաս . ոչ գիտելով , եթէ ժամանակաւոր է պէտք քո ։

՚Նմանէ իմն առակս այնոցիկ , որ առ մի իւիք են պիտանիք . և դուզնաքեայ ժամանակաւ , և հպարտանան անմտութք , ոչ նմանիլն տիրապէս խոնարհաց . որ առ ամենայն իւիք պիտանիք գոլով առաւել զիջանին , զի անվրէպ լիցին ։

## ԽԷ ։

Դ սերմանց է և անտոհմանեայն ար-
ջնդեղ . զոր լուեալ արջու , 'ի ցա-
ք ւել

ւել տրտմայինին առեալ եկեր՝ կարծե-լով դեղ լինելեան, մի՛ անուանն, և ինչ ոչ օգտեալ՝ ասաց. ո՞ խուլք և ճանդղի, որքան բարի էք որ-վայնի ։

Օ անխմաստից և զտրտմայնամտելոց ա-ռանկս գուշակէ, զի քան զպիտանին և զստակաւն՝ ընտրեն զբազումն և ըզ-խոշորն ։

## ԽԲ ։

Սամիթ և գինձ, չամամ և փեգե-նա՝ և նմանք սոցին, ՚ի խառնուածե-սակ խոտոց սերմանց պարսաւեցան իբր սակաւք, զի ո՛չ ՚ի կալ և ՚ի շեղջ-գան, այլ ՚ի ծրարս դուզնաքեայս ե-փեն, և զի եփեալքն արտաքս ձգին, և զինքեանց բաւականք յամանն. և նոյն լուծեալ պատասխանեն, թէ ո՛չ արհամարհելոյ աղագաւ եմք այն-պիսի՝ այլ պատուոյ, զի եփեալ՝ զօ-րութիւն տամք կերակրոյ, զի գոլի զօրութիւնն՝ և ո՛չ ցողունն. և իբր զպատուական ակունս ՚ի վարշամա-կի ծրարեմք. իսկ դուք այնքան էք անպիտան, զի ոչ ընդ բազումս էք

'ի կալ, և ոչ ընդ սակաւս ։

Տեսաւորութիւն առակիս այսպիսի է, զի իմաստութիւնք 'ի խելացնորից արհամարհին՝ իբր զչափաւորս և անպիտանս 'ի վարս աշխարհիս, և զինքեանս իբր զպիտանիս կարծեցուցանեն, ըստ որում անօգուտք են․ իսկ ուսեալք 'ի նոցանէ, թէև մարմնով արհամարհիմք՝ այլ խորատ մեր հանճ-մէ զբարեգործութիւնս, չափաւոր գոլով իբր զառս․ և իբրև զականս պատուականս պատուիրն բանք մեր, և այսպէս անանչեալ դատաւորեն, զի ոչ ընդ իմաստունս են պիտանիք․ և ոչ ընդ աշխարհականօք ։

ԽԹ ։

Լուծեալ ոմն 'ի գաւառանոսէ, զի ընդխաչխաշն կոչեցեալ սերմն, որքնուն օգտակար ասէր․ և առեալ սերմանեաց 'ի պարտէզ իւր, և ընդ բուսանել և 'ի լինելն բանջար, առեալ եկեր, և ոչ եղև օգուտ հակմանն․ նմանապէս և 'ի ծաղկելն․ և 'ի գըլխաւորելն, և ոչ անդ․ և սկսաւ թշնամանել զգաւառանոս, և զանէ-

նայն

նայն բժշկապետսն , խաբեբայ զնա կոչելով . և նոցա լռեալ սաստեն նմա ասելով , անմիտ այր դու , ըղ-ժամանակն ոչ գիտելով զճաշակ-ման , անօգուտ արարեր . զի՞ մեղա-դրես մեզ :

Միտք առակիս այս է , զի ախմարք լռեն՝ ի վարդապետաց զպէտս պատ-ուիրանաց , անժամանակ ձեռնա-մուխ լինին . և անկատար լինելով , թշնամանեն զքարոզսն , ոչ գիտե-լով թէ ո՞ւմ ժամանակ է :

* Նմանական է այսմ տեսակի ասա-ցեալքս :

---

Ծ :

Կարգեցաւ հրամանատար և՝ ի թա-գաւորէն բուսոց ճակընդեղ՝ ի վր բանջարոց , իբրև զտեւող յամարայ-նի՝ ի կերակուր մարդկան . և խան-դացեալ սեխ և ձմերուկ , և այլ պտուղք բանջարաց և պարտիզաց՝ թաղթ և շաղգամ և սոխպղին , և սկսան չարախօսել . եթէ սաստիկ ամենեքին է՝ և գոշող որովայնի . և

գիտացեալ արքայի՛ն նց̃ , տանջել զնա հրամայեաց , եթե զի՞ յանդգնիք՝ ընդդէմ իշխանի . զի հնազանդել պարտիք , և ոչ քննիչք լինել , զի մի անկարգութիւն լիցի .

Ցածուցանէ առակս զյանդգնութիւն մարդկան , որ դատիչք լինին վարուց իշխանաց , և բազում պատճառս չարեաց դնեն նց̃ , և ո՛չ իմանան՝ թէ այնոքիւք լուծանին կարգք իշխանութեն՝ մինչև 'ի բնաւեցն ժամանէ իշխանն ա̃ծ .

## ԾԱ.

Դարմանեցաւ ոմն 'ի թաղթէ 'ի գարնան յեղանակի . և զբնաւն կարծելով պիտանի 'ի դարմանս , եփեալ սերմամբքն հանդերձ եկեր , և սկսաւ ործալ . և զայրացեալ թշնամանէր . և 'ի նմանէ յանդիմանի՝ թէ յամենայնն եմ պիտանի՝ գիտողաց՝ 'ի կերակուր և 'ի բժշկութիւն .

Նման իմն է առակս այնոցիկ՝ որ յարին յոմանս վ̃ս քաղցրութե̃ բարուց , և թէ պատահի վ̃ս օգտի սաստել

Թըշ-

թշնամանեն խիստ կարդալով, զոր
և ուսանին, թէ բանք նոցա ոչ միայն
'ի խրատ են, այլ և 'ի սաստ և 'ի
բժշկութիւն հոգւոց ։

Ծ. Բ.

Բժիշկ ումն բնախօսէր՝ ստուգաբա-
նելով զանուն բանջարին կոչելոյ՝ բը-
պանակս, եթէ է հիւանդ. զի օգա-
նանել արժան է նախ, և ապա քնա
տալ կերակուր, զի այնքան մնացա-
կար է. և լուեալ ախտացեալ այրն
անհնարին հրաժարեաց, ոչ գիտելով
թէ ոչ վն ամենայն հիւանդաց ա-
սաց ։

Զայս տայ իմանալ առակս. զի ըղ-
պատուէրանս իմաստութիւնք բնախօ-
սէն, թէ զփափկացեալն սպանանել
'ի դէպ է՝ քան թէ պահոց նոցա պատ-
ուէրան աւանդել. և անմտի կար-
ծին պահք բնաւ հրաժարելի. այլ
ոմանց անդէպ կարծի, բայց ոչ և
բազմաց հիւանդաց հոգւով. ոչ և
սպանակս ոմանց է չար՝ այլ բազմաց
պիտանի 'ի դարմանս ։

## Ծ. Գ.

Ոխստոր գալլիանոս՝ Թիւրակէ կոչէր շինականաց, և լուեալ մշակի միոյ, առեալ եկեր կայթիւ, և խելագարեալ կուրացաւ:

Զգաստումն առակիս այս է, զի իմաստունք զզգաստումն մարդկան բուժիչ ամէն երկիւղի, և թէ անհմտաբար անչափանան, կուրանան հոգւով:

## Ծ. Գ.

Իփեալ հողագործ որ 'ի պարտիզէ իւրմէ զսոխ քաղում, կարծելով ըղնա բանջար, և անկաւ յորովայնածուլթէ ախտս:

Իմանալի է առակս. զի ցանկութիւն ամենայն իրի ըստ կարգի՝ բարի է բնութեանս, իսկ յաճախագոյն հետևիլն և յաւելի քան զչափն՝ ապականիչ է:

## Ծ. Դ.

'Ի հրապարակս ձոխաց՝ 'ի միասին սոխ և խստոր ընդ բնաւ բանջարս կամեցան գնալ ծածկել զինքեանս, և

Է ոչ նկարագրեալ, զի 'ի հոտոյ բուռն-կունքն լցան, և աչքն արտասուեաց բազմականկանքն · մ՛ն ողոյ և բնաւքն արտաքս անկան ։

Իսկ յայտնէ զմինակս զչարահամբաւսն, և զախտացեալ անզեղջսն հոգով, ոչ թողուլ ընդ մեզ 'ի ժողովս սըր-բոց · զի մի և մեք նոյն խառնիցիմք ։

## Ծ. Օ.

Հարցաւ սուտերազլին 'ի շաղփաղէ, եթէ զի այդքան ընդ երկրաւ մտաւ-նես · և նա ասէ՝ թէ պատկառեմ ընդ յանդգնութիւն քո, զի կարմիր և սպիտակ գոլով՝ տեսիլ զքեզ առ-նես · որում ապաքանեաց, եթէ չար է այս, չար է և բնաւ երկչո-տութիւն քո ·

Յեղանակս՝ մեջին հրամայէ մեզ լի-նել երկիւղի՝ և յանդգնուէ, զի չար երկաքանչիւրքն են ։

## Ծ. Ի.

Հասեալ սեխ՝ և քաղցրացեալ, ար-քայի պտուղ զանձն կոչէր՝ թէ և 'ի բանջարոց, իբրև 'ի փոքր շառաւի-

զէ մեծ • և քամահէր զընկուզն՝ մեծ ծառ և փոքր պտուղ • որում անդրադարձեալ, զի եթէ յերկարաժամանակ լինէիր՝ 'ի դէպ էր կոչումնդ, այլ զի որովայնանց լինելով դարշելի լինիս մեծամեծաց և փոքունց • իսկ ես թէ և փանաքի, սակայն բազմաժամանակեայ, և լուսոյ նիւթ՝ ճոխաց և աղքատաց :

Օ փափկուն յանդիմանէ առակս • Թէ և թագաւորաց յանդգագոյն, նա և սակաւաժամանակ և ապականելի • իսկ առաքինութիւն թէ և դըձուձ կարծի, այլ բազմաժամանակեայ և լուսաւոր :

## ԾԸ :

Մտեալ ումն 'ի պարտէզ՝ կամեցաւ հարկանել զձմերուկ և ուտել • զարհուրեալ նորա ասաց, զի՞նչ գործես այր դու՝ ո՞չ գիտես եթէ ձու եմ ես փղի • եթէ տարցես զիս 'ի տուն քո և պահեսցես զգուշութեամբ՝ զի մի՛ բեկայց, ծնայց քեզ փղորդի՝ գնոց հազար դահեկանի • և ուրախ եղեալ տարաւ 'ի տուն իւր, և յետոյ ընկեց զնա

զՆա տրտաքս վիրաւորեալ. և այս-
պիսեօք զերծեալ եղև ՚ի սրոյ։
Խցելս խառնել առակս ՚ի մեզ կամի.
զի ՚ի ժամանակս՝ յորում սպանողի
՚ի ձեռն անկանիցիմք, պատուհականս
զմեզ առնել՝ և բազմագինս. զի յու-
սով շահիցն ՚ի տուն տարեալ, հիւան-
դութե՞ և կամ մահուամբ ՚ի սրոյ ա-
զատիցիմք. զի հարկաւ կրեմք զա-
պականութի՞, թէ և նոքա զգուշա-
նայցեն։

Ծ. Խ.

Մարունկն՝ կոչեցեալ պտուղ պար-
տիզի, մեծարգոյ քան զայլսն կար-
ծէր զանձնէ՝ վ՛ս կանխութեն. և ՚ի
սկսէ ըստգտեալ, եթէ պատուհիս՝
լեար զի մերձ ոչ իցեմ, և եթէ ո՛չ
այնպէս՝ սակայն անպատուհիս՝ գեղ-
նութե՞ գարշելի եղեալ։
Յայտնի են միտք առակիս, զի ա-
նարգք պատուհին կանխաւ ժամա-
նեալք ՚ի ընաւ տեղիս. իսկ ՚ի մերձ
գալ պատուհականացն՝ արհամար-
հին, նա և յաւելի յամեալք՝ ժան-
տութիւն նց՛ և յայտնին։

## Կ:

Ետես 'ի վաճառի անփորձ ոք զշամամն, և հարցեալ որ մօտն կային, թէ զի՞նչ իցէ. և գիտացեալ զօրգիտութիւն նր, ասեն թէ ձու է սիրամարգի. և նա հաւատարիմ կարծեաց վն նմանութեան, և տարեալ եդ 'ի ներքոյ հաւոյ՝ զի ելցէ ձագ սիրամարգի, զոր առեալ եկեց հաւն. և յետ աւուրց երթեալ 'ի տես, և պատահեալ անդ ոսկի եղնակ՝ թռեաւ, և նորա նստեալ լայր՝ եթէ անժամ եկի, և անկատար գընաց ձագ սիրամարգին:

Զառակս այսպէս դիտեմք, զի յիմարաց գեղեցկութիւն պատրող է՝ և հաւատարիմ գոյութիւն կարծէ, այլ իմաստունք գիտեն, զի գեղեցկութիւն անգոյ է, և զօրութիւն՝ ճըշմարիտ:

## ԿԱ:

'Ի բժշկութիւն որովայնի զինքն քարոզէր կաղամբ, եթէ կերեալ ոք հում, զորովայնն լուծանեմ, և եփեալ՝

փեալ՝ պնդեմ. և բազում ինչ սր-
տութիւն բարբառեր. և պատրեալ
ամս յաճախեաց յուտել՝ օգուտ վար-
կանելով. և սկսաւ ձայն յորովայնէ
նոր ելանել, և մեղադրեր իբր սուտ
և պատրողի. և նա ասէ՝ չէ՛ ինձ
փոյթ, զի հնարեցայ յորովայն քո
մտանել, թէպէտ և անարգութիւն
ելանեմ:

Օրինակս իմանամք այսպէս, զի
խաբեբայք և կեղծաւորք բազում
ինչ բանս խօսին պատրանաց, մինչ
յարգոյ լինիցին. իսկ յետոյ յայտ-
նեալք, թէ և անարգին և խոտին,
ոչ բնաւ պատկառին, զի 'ի գլուխ
ել չարութին նց:

*Լուեսցեն և այս տեսակս. անցցուք
և յայլ ինչ:

---

## ԿԲ:

'Ի լերանց իւրաքանչիւրոք զինքն
գիտէր գլուխ այլոց՝ ըստ երկք երկք
առաւելութե. 'ի յոյնս՝ պոնտոս, և
պրոպոնտոս. յարևմուտս՝ յետնէ. 'ի
պաղեստին՝ կարմեղոս, յասորիս՝

կողդուս · տապանակաւն 'ի Հայս՝ մասիս · և յաղուանս՝ կաւկաս · որ 'ի կիլիկիա՝ պարխար , և 'ի միջնա-Հայս՝ տաւրոս , և յայլս՝ այլք · և ընտրեալ յայտնեցաւ քորեբ՝ յաղագս Երևման խաչին տն մովսէսի · և թաբոր՝ վս տն այլակերպութեանն · և լեառն գալիլեացւոց՝ սակս տն վերդապետութեն · և յայսպիսի կարծեաց լռեալ դադարեցին , իբրաւունս տալով նց ։

Ո՛վ այս իմաստս տայ օրինակս , զի թէպէտ մեծ կարծին փառօք թագաւորք հեթանոսաց , և կամ իշխանքն՝ վասն օրինակին , սակայն մեծ են առաքինութբ անձինք խոնարհ մարմնով և շնչով , յորժամ 'ի նոցա բնակէ ած իջեալ ։

## ԿԳ ։

Նման այսմիկ և գետք՝ իւրաքանչիւր զինքն կարծէր առաջին լինել այլոց , փիսոն և գեհոն , տիգրիս և եփրատէս , գետն կուր և երասխ , պառատիս , և այլք ևս · և դատեալ՝ առաջին ցուցաւ յորդանան՝ տն մկրտու-

տուեթէն աղաղաւ ։

Յայտ իսկ է առակս ․ զի ճշմարտութի հզօր է քան զօրինակն ։

## ԿԳ ։

Այսպէս և աղբեւրք կոչեցին , որք և այն որ 'ի պարս՝ դուստր համբաւեցաւ նեղոսի , և կամ որ յանտառքըն , և կամ արեթուսայն , և այլք ․ բայց պատուականն ցուցաւ , որ ըղդըրախտն առողջանէն ։

Այս՝ առակս նշանակէ ․ զի խըրաքանչիւր աղբերըն օրինակ մարդկան իմաստից են ․ իսկ որ զդըրախտն առողջանէր՝ նմանայնոյն ․ զի դրախտ է մարդ , և ծառք՝ առաքինութիք , և աղբիւր՝ հոգևորն գիտութի , որ առողջանէ զառաքինութի ։

* Սակաւուք և այս շատացուք ․ առցուք և 'ի կենդանեաց ։

---

## ԿԴ ։

Ժողովեցին ամենայն ազգք կենդանեաց՝ ջրայնոց և ցամաքայնոց , խնդրեանց թագաւոր յարքայէն քան ,

և

և կատարէ զհայցուածս նոցա, տալով ջրային զլեւիաթան. և ցամաքային զբեհեմովթ. և հարկաւորաբար սահմանեաց, զի մի՛ զմիմեանց բարձցեն զիշխանութիւն, թէ և կամեսցին. ուստի անշարժ զլեւիաթանն արար, և միշտ կարօտ ջրոյ. և զբեհեմոն՝ հեղձանել'ի ջուր:

Իմանամք զաւակս ըստ այսմ, քանզի բաշխեաց զթագաւորութի՟ երկրի նախախնամաբար. զոմանց 'ի ծովու կղզիս, և զոմանց 'ի ցամաքի, լերամբք և գետովք ամրացոյց. զի մի՛ զմիմեանց ապականեսցեն զթագաւորութի՟, թէ և կամեսցին:

## Կ.Օ.:

Յետ կարգելոյ զիշխանս 'ի ջուրսն, զլեւիաթան արքայ՝ ասեն, զիարդ է՝ զի ոչ շրջիս, կամ ապստամբես. և նա ասէ. զի թշնամիք առ մեզ ոչ գոն, և անկարօտ եմք իմիք, զմերս վայելեսցուք. և ընդ ձեզ ոչ զբօսանամք, զի մի՛ ծանր ձեզ եղիցի. և ասացեալքն հաճոյ նմ՟ թուեցաւ:

Ընկերակցութի՟ առակիս այսպէս է,

զի

զի թէ թագաւորութիւն յայլմէ ոչ
նեղիցի 'ի թագաւորէ՝ և բաւական
կեանս ունիցի, բարի է խաղաղա-
սէր լինել, նա և ոչ իւրոցն ծանրա-
նալ շրջելով. ապա թէ հարկաւորի
'ի թշնամեաց, անարգութիւն է ոչ
տալ պատերազմ:

ԿԱ:

Եկեալ ազգ մկանց առաջի թագա-
ւորին իւրեանց՝ և ասեն, զի ստա-
ցեր թէ թշնամիք առ մեզ ոչ գան,
և վա այն ոչ տամք պատերազմ. ա-
հաւասիկ եկեալ մարդիկ՝ որսան ըզ-
մեզ, և դու վրէժ ոչ առնուս. և
սղոցաձկանն հարեալ զնաւ որսոր-
դաց՝ և զբազումս ընկղմեաց. և
զայլս ես եղեալս պատմէին նմա:
Եւ լուեալ զպատրաստութիւն, և ումեմն
ձկան հրամայեաց պահ ունել նա-
ւորդաց, զի մի այնպիսի ինչ պատա-
հիցէ. և զնա հաձէր, ոչ գիտէք ա-
սէ՝ զի իշխան մեր են մարդիկք կար-
դեալք յայ, և վա այն հարկ է մեզ
լսել՝ զոր ինչ և գործեն.
Հանձարեղս կամի առնել օրինակս

զԹագաւորս զի յորժամ հզօր ոք քան զնորայն իցէ Թագաւորութիւն. և կամիցի հարկս պահանջել, յանձն առցէ տալ սիրով. և զընդդիմացեալսն խրատեսցէ՝ ոչ հակառակել, զի յայս կարգաւորեալ է՝ տկարի հընազանդ լինել հզօրի։

ԿԲ.

Դարձեալ ևս զայս պահանջեմ, եթէ յամի բարեմիտ գործով, ոչ կամիս ամբոխ լինել, սակայն անյայտ է Թշնամեաց, կարգեսցես երկրորդ քեզ. կատարէ յայսմ զհայցուածս նոցա, կացուցանել իւր երկրորդ ընկիտոսն։

Հարկաւոր ցուցանէ առաւել զերկրորդն լինել Թագաւորի և բնաւ կարգաց. զի սնա զբարեկարգութիւն պահիցէ, և միւսն զմարտան վանիցէ։

ԿԳ.

Համնդխացեալ կրիայք, կամեցան արշաւանել ՚ի կրիւն. յուսացեալք ՚ի սպառազինութիւն զրահամորթ գոլով,

լով, ո՛չ իմացեալք եթէ զծուծապա-
շարժք եղեալ պարտին. իսկ կրետա-
ցիքն դաւաճանեն առաջի փախչե-
լով՝ և կասեցուցանեն. և ապա դար-
ձեալ թաւալեցուցանեն, և քար ե-
դեալ 'ի վերայ կրծից նց՝ սատակէին
ծաղր եղեալք:

Պարսաւէ առակս զայնոսիկ, որ մի-
նչ ունին յառաջադիմութիւն, և այ-
նու խորոխտան՝ ըստ որում օրինակի
և իցէ. և հանդիպացեալ ամօթ կրեն
'ի բազմաց՝ զոր ոչ ունին 'ի տեսա-
նել, յաղթօղ 'ի վերայ նց երևեալ
այլք:

ձ:

Խորհուրդ արարեալ գորտունք ծո-
վու, ասեն՝ ընդէ՞ր հեղձանիմք 'ի
ջուրս տղմնդերք և դեղնեալք, ել-
ցուք և կենցաղավարեսցուք որպէս
զայլս. և մի ոմն ծերունի ասէ, հայր
իմ պատուէր ետ ինձ, եթէ զապա-
տան ծովու մի թողցես, զի բնութ
է մեզ զանգիտել. արդ՝ գուցէ ե-
լանիցեմք՝ և զարհուրեալ դառնայ-
ցեմք, և երևելի զերկչոտութիւն մեր

առ-

առնիցեմք . և նոքա ոչ հաւանեցան
ելին , և լուեալ ոտնաձայն՝ փախու-
ցեալ խորասուզին :

Պատանեաց յառաջս խնամատարութ՟ի , զի
նախ դիտել 'ի դէպս է զգուշութ՟ի , և
ապա զանեզի կամ զգործ փոխել . և
հաւանութ՟բ առնել ծնողաց . զի մի
դիտելով զպատկառութ՟ի մեր , քանզի
հիցեն զայն ինչ , զոր ոչ գիտէին յա-
ռաջ :

ՀԸ :

Օհուր վարժեալ որսորդաց , էանց
էպէնեջան , և տափմամբ կերակուր
իւր կամեցաւ առնել . և ըմբռնեալ
զնա որսորդաց , մերկ զնա արարեալ
թողին .

Օննել ապակս ուսուցանէ նախ
զիրան , որում ցանկամք առնել . զի
մի գուցէ առնուլ կամեցեալ , և ըզ-
մերն թողումք՝ զոր ունիմք :

ՀՐ :

Ողոքէր ոմն զխրխնջիւն ասելով ,
արի եկ առաջս , զի մեծարեալ
պատուեցից զքեզ բազմազան օրի-
նա-

նակօք . և նա ասէ՝ չիք ոք զքեզ դա-
տեալ պատուհասէր առ այլս . զի մարդ
և ինձ լինիցիս . ոչ է այդ , այլ զի ա-
րեան իմոյ ցանկաս . և ոչ ել ար-
տաքս , զերծեալ 'ի նմանէ զգուշու-
թեամբ :

Օ արթուցանէ զմեզ առակս , ամե-
նեքին ոչ հաւատալ պատիր բանից
այլազգեաց , յայտնի ունելով զմիտս
յանցելոց խաբէութեանց առ այլս .
զի արեան և ստացուածոց ցանկան
քրիստոնէից , և ոչ եթէ պատուէն :

ՀԲ :

Օ մուռնեան՝ զոմն 'ի խեցեմորթից
'ի տուն իւր կոչէր առնել նմա ճաշ ,
և 'ի մահիճս հանգուցանել . և նա
յանձն ոչ առնոյր , եթէ չէ՛ դիւրին
ինձ մերկանալ և յանկողինս մտա-
նել , թէ և 'ի ճաշն վայելեմ . և
զդժուարամերկն լինել ցուցանել
կամելով , սակաւ ինչ յուրմէ զխե-
ցին թողացուցեալ , ձգէ գազանն
քար 'ի պատեանն , և ըմբռնեալ
ուտէ :

Օ բարս նենգաւորս առակս յայտնէ
կա-

կացուցանէ ․ զի զտեսալ ժամ՝ հաւ-նել 'ի գլուխ զչարիս կամի ․ զառա-ջինն թողեալ՝ զերդեալն կէտ ․ զի իւր՝ և ոչ քան նմա պատուէլի է ․ յորմէ ոչ դիւրին է զերծանել ։

ՀԳ ․

Ոմն 'ի ջրայնացն ուսեալ կամէր ընդ-գորտունս , և ոչ կարէր՝ ամրացեալ նոյ ․ և գոչէր զնա , թէ յոյժ զեղե-ցիկ էք ձեռօք և ոտիւք , և քաղցրա-բարբառք՝ հնչելով 'ի միասին երբև զերգիոնն , ընդէ՞ր 'ի մեզ ոչ մօտիք , զի վայելեսցուք 'ի տեսս ձեր ․ և զի՛-տացեալ զխորհուրդ նոց ասեն , ոչ ապաքէն վկայեցեր տեսլեան և ձայ-նի մեր ․ , արդ՝ յայտ է եթէ մարմնոյ մեր ցանկաս , և ոչ տեսլեան և կամ ձայնի ։

Միտ դնել առակս քանից խաբէու-թեց՝ ուսուցանէ ․ զի բազում ան-գամ յիւրմէ յայտնի յասացուածոց , թէ և ծածկել կամեսցի ։

ՀԴ ։

Մեղադրեցան ձկունք 'ի թագաւո-րէն

րէն իւրեանց ; թէ ընդէ՞ր զայլս ու-
տէք զմանուկսն . և նոքա համար-
ձակեալ ասեն , մի՛ զի 'ի քէն ու-
սաք . եկեալ բազմաց յերկրպագու-
թի , և կլանելով կերակուր քեզ ա-
րարեր . ըստ այսմ և ինքեանք են
յանդգնագոյնք եղեն :

Օ այնոսիկ յանդիմանէ առակս , զի
որով ինքեանք գործեն , զայլս բամ-
բասել կամելով առաւել և 'ի չա-
րիս յորդորեն՝ քան թէ կարճեն . մի՛
զի գործովն՝ քան բանիւ 'ի դէպ է լի-
նել խրատուն :

* Ըստ ըոցի և այս . եկից 'ի ցամա-
քայինս :

---

Ձ. Օ :

Հայեցեալ բեհեմոթն յիւրաքանչիւր
յազգս կենդանեաց , անկասոր կար-
գէ իշխանս , զզուարակ՝ անդեոց , և
զխոյ՝ հօտից , զնոխազ՝ հօտանաց , և
զառիւծ՝ գազանաց , զձի՝ բեռնակ-
րաց , և զարծիւ՝ թռչնոց վայրե-
նեաց , և զաքաղաղ՝ ընտանեաց . և
սահմանէ իւրաքանչիւր գործոյ ու-

ու-

ունել ։

Նորեկարգս կամի ունել ուսանկն զԹագաւորս, ըստ պատշաճի մեծարել զիշխանս և զդատաւորս, նմանապէս և յեկեղեցիս ուղղել ըղկարգս ։

ՃԻ ։

Օ ուստակ յոգորեն՝ զեղջերուն հարեալ ՚ի գետին Թափէ . և վերըոտին եկեալ նմանապէս, այլ ոչ եւս հողահանէ ։

Իմաստունս ցուցանէ առակս զայնոսիկ, որ միանգամ խրատեալ՝ յաւելութենէ զօրութեն զիջանիցի ։

ՃԻԱ ։

Փախուցեալ երբեմն ՚ի ըծոյ հերկանց եզն, և ըմբռնեալ ՚ի մշակէն ածաւ ՚ի կալն . և յայնմանէ փախուցեալ, ածաւ ՚ի սայլն, և յայնմանէ՝ ՚ի բազում ինչ, մինչև անհնար ետես զփախուստն . և հաւանեալ մոռացաւ ։

՚Ի դէպ է առակս այնոցիկ քննել խրատիչ, որք լծութեամբ ըղկեանս՝

կեանս՝ և տուանց գործոյ կամին ան-ցուցանել՝ որոց արժան է խրատել սոյնպիսի, մինչ զի յանձն առցէ զա-մենայն ինչ, քանզի ո՛չ է հնար քա-ղաքավարիլ անգործ:

ՃԺ.

Սաղմոսելթի անդեղոց ժողովեալք՝ ի ներքոյ անտառաց՝ հրապարակախօս-քինէին, հնարս իմանալ՝ ՚ի վտանգէ զերծանել՝ ՚ի գայլոց. և լուեալ գայ-լոց զարհուրեցան, գուցէ սորդեօք լուծցին բռնութիւնք նց ՚ի հնարից նց. և մի ոմն ՚ի ծերոց նց ասէ, ե-թէ ոչ աղօթիցէք՝ զի յինքեանց պատճառէ ցրուեսցին, հզօր է խոր-հուրդ նց. և յաղօթս կացեալ, և նուիրեալ պատարագս նմ, զմեծա-գաւ աւուրն մտեալ ՚ի նն կէտք. և փախուցեալք ցրուեցան խորհուրդք նց, և ուրախ եղեն գայլք:

Յառակէս իմանամք. զի յորժամ թշնամիք մեր չար խորհեսցին վասն մեր, և չիցեմք բաւական անձամբ լուծանել, յաղօթս պարտիմք կալ. և ՚ի պատարագս ապաւինել, զի ած մեն-

յԻնքեանց պատճառաւ խափանեսցէ զնոսա ։

## Ձ ։

Եղև երբեմն տրտունջ անդէոց, թէ վն ծննդոց մեր աշխատիմք, և ստեամբք ժողովեմք կայթն, և մարդիկ ձմերայ զպտկունս՝ առնուն ՚ի մէնջ զվաստակս մեր. երցուք և այլ մի՛ դարձցուք առ նոսա. և մի ոմն ՚ի նոցանէ իմաստուն ասէ, ո՛չ է այդպէս. զի զաւելորդսն քան զպէտս ծննդոց՝ մերոց առնուն մարդիկ, և խնամեն մարդիկ զմեզ և զծնունդս մեր, զի առնումք շատ՝ քան թէ տամք. և ուսեալք զայս՝ ուրախ եղեն ։

Խրատէ առակս զքրթմնջօղ սպասաւորս, որք շատ կարծեն զինքեանցն քան զտերանցն զոր առնուն. այլ ուսեալք յիմաստնոց գիտեն՝ զի սակաւ է ինքեանցն ։

## ՁԱ ։

Խոյ եհար եղջերօք զգլխոյ զծառ բազում անգամ, և թափեաց զեղ-

Է ջեւրսն,

ջերմն , և սկսաւ անիծանել զնա ։ և նա պատասխանեալ ասէ , քեզէն եղեր պատճառ՝ զի մեղադրես ։

Օ վայրապար անիծանողն յանդիմանէ առակս , որք ցասուցեալ ինքեանց ախտիւք՝ զայլս պատճառեն ։

ՁԲ ։

Հօտ՝ յերթալն իւրեանց շարժէին զմանկը նց , և սկսան զնա բամբասել հօրանք այծից , թէ ընդէ՞ր նըման մեզ ոչ երթայք պարկեշտս ։ և զի նախանձ մանաւանդ էին բամբասանքն ։

Յանդիմման կացուցանէ առակս՝ ըզբարս նախանձոտաց ։ յառաջել ոմանց շնորհի՛՝ բամբասեն ։ և ինքեանց՝ զի ոչ ունին , 'ի պարկեշտս համարին ։

ՁԳ ։

Նոխազի առեալ յայծից եմուտ 'ի գժուարս քարանձաւաց ։ և տեսեալ զայլոսն , և եկեալ հարցանէ , թէ զի՞նչ այդր գործէք , և ասեն միայ-

## ՁԵ.

Ա·եկեալ առիւծու ասք՝ տրտնջէր զբնաւ կենդանեաց, եթէ հարկաւոր իմ էք՝ զի իշխան գազանաց եմ, ընդ էր այժմ ոչ պատարագէք զի զարմանեցայց. և ասեն, զի 'ի քէն ինչ ոչ գտաք պահպանութիւն ոչ յարջոյ և ոչ 'ի գայլոյ՝ և ոչ յայլ ինչ գազանէ. նաև ոչ գոլ խակ 'ի մեզ խնայեցեր, այլ մեզ պատառագել ո՞յ արժան է, որ այդպիսի չարեաց զքեզ պատուհասեցոյց:

Յայտնի է առակիս միտք, զի չարք յառաջնորդաց յաշխարհականաց և յեկեղեցականաց՝ տանջելով զհնազանդեալս, և ոչ յայլոց պահեն 'ի վըտանգէ. և ըստ արժանոյն անկեալք 'ի չարիս՝ ո՞յ պոհութիւն մատուցուք զի ոչ 'ի մէնջ եղև:

## ՁԶ.

Առիւծ և արջ և գայլ 'ի միասին ժանկացեալ, ասեն՝ ընդ էր լինիմք հմակերք, ըմբռնեսցուք զոմն 'ի մարդկանէ՝ զի ըստ օրինի իւրեանց

 զոր

զօրացեալս մեր կերակուր մեզ պատրաստեսցէ . և կալեալ զոմն արարին խորտակարար . և նեղեալ առնմն՝ հնարեցաւ ազատել, հերձել փայտ մեծ՝ և եդեալ սեպս յիւրաքանչիւր կողմանս, և ասէ ցառիւծ և ցայլսն, օգնեցէք ինձ պատառել զփայտս, դի՛ք իւրաքանչիւր զձեռս 'ի ներքս և ձգեցէ՛ք . և իբրև եդին, հանոյց զերկիթսն, և մնացին անլոյծ . և առեալ զատապարն՝ սկսաւ 'ի ջախել, և ասէ՝ զակիզքն յառիւծէն արարից ։

Օ անհրահանգ տեռնչանս յանդիմանէ՝ առակս՝ զի պատճառ լինին ոմանք չարեաց . և լինի քաղում անգամ՝ որ նախ պատահի սկսողաց .

21.

Արջու ցաւեցին որովայնն, եհարց զաղուէսս դեղ . և նա ասէ, յայդ բարեպաշտ՝ է այս անուն դեղ, երթիցես անդ՝ և տացէ մեղր որ յոյժ օգուտ է քեզ . և իբրև մերձ եղև 'ի դեւղն, և շունք անդէն փախուցին . և սկսաւ մեղադրել աղուեսուն . և

ասէ

ասէ աղուէս . առանց դպրութեան է
այրն , որ զքեզ 'ի շանցն ոչ ապա-
տեաց՝ և ոչ ետ դեղ . և արդ՝ եկ
տարայց զքեզ առ կրօնաւոր ոմն Հըռ-
մուտ ճծեղէն բանից . իբրև ետես
կրօնաւորն՝ սկսաւ թշնամանել ըղ-
նոսա . և աղուէսն եցոյց զմուտ մե-
ղուացն . և արջուն մտեալ՝ զմի ե-
կեր փեթակ , և զմի առեալ գնայր .
և կրօնաւորն անիծանէր զաղուէսն ,
իբրև զպատճառ փնասուն . որում
ասաց եթէ տմարդութիւդ արար քեզ
զայդ՝ ես անպարտ եմ . զի ոչ ետուր
դեղոյ՝ ետուր փորոյ . և ոչ ետուր
դեղ .

Աշխարհականն իբրև զտղէտ անկը-
նաս մնաց , և 'ի կրօնաւորէն վրէժ-
առաւ իրաւացի . զի յուրշտութենէ
բազում այսպիսի պատահի վնաս 'ի
նենգաւորաց առաջնորդութենէ՝ 'ի
գազանաբարոյ արանց :

## ՁԸ :

Եգիտ աղուէս զգայլ կուրացեալ ,
և եմուտ նմա առաջնորդ վարձուց
աղագաւ . և 'ի միում աւուր գայ-

Թագաղեցոյց 'ի ջուր յանկարծ. և նա ոչ հաւատայր, այլ աղաչէր վրէժ առնուլ. և երկուցեալ աղուէսուն կամէր փախչել, և ոչ կարէր՝ զի ըմբռնեալ ունէր. և ասէ, վաղիւ զատիկ է, տարայց զքեզ յեկեղեցին՝ զի կերիցես մատաղ. և ուրախ եղեալ գայլուն, և գնային 'ի վաղիւն. և տարեալ զնա՝ արկ շանց, և ասէ գայլն, այս է մատաղն ո՞ չար սպասաւոր. և նա ասէ՝ այդ է, զի այդպիսի չար կուրի, այդ՝ և ոչ այլ ինչ վայել է:

Զառակս զայս պարտիմք իմանալ, զի զղջացեալք նենգաւորք և առաջնորդեն կուրաց. և Թէ յայլ ինչ բարիս դարձեալք՝ չարաբարոյք հրապուր են զնոսա յառաջինն դանալ նենգութի. որպէս պատահեաց գայլուն և աղուեսուն:

## ՁԹ:

Գայլու ծերացեալ՝ գնաց առ հօտն, և ասէ՝ ապաշխարող այժմ եմ. և շատ զձեզ տրտմեցուցի, և մի այն կամիմ գալ, և աւել տան ձեր ածել:

ծել , զի թողութիւն լիցի , և զման‐
կունս ձեր պահել յայլ ևս զայլոց .
և ուրախացեալ շանցն ամեն՝ մի ևս
մեղանչել նմա , և կայր և սպասէր՝
մինչև եղեն զառինքն մեծ՝ և սկսաւ
յուսել և 'ի պատառել , մինչև ան‐
սաւ 'ի բազմաց՝ և սատակեցաւ :
Խրատս այսպիսի տայ առակս՝ ոչ
համառօտել փութով սովորից չարաց ,
զի հնացեալ՝ բնութիւն լինի , և առ‐
նոյն քարշէ՝ լինելով որդի սատակ‐
ման :

Գ.

Շանց առաջի եկեալ՝ ամեն Թա‐
գաւորին իւրեանց . ամենեցուն է‐
տուր պատասխանի կենաց , մեք զի՞արդ‐
արուեսցուք : Մի՛ աղբերեսջիք : Մի՛
ամեն՝ այդ մեզ բաւական է , ապա
թէ հիւր ոք մեզ եկեսցէ , զի՞նչ ա‐
րասցուք . և ասէ ցնոսա , այնքան
դղեսջիք՝ զի զարձել մի եկեսցէ :
Զհիւրամերժս և զատարատեացս
առակս յանդիմանէ՝ զի երբ օրինօք
ունին զինքեանց հոգալ կեանս , և
ատել զհիւրս :

## ՂԲ։

Մկունք համանգամայն հրեշտակս առաքեն առ կատուն՝ և ասեն, զի՞նչ քեզ մեղանչեմք՝ որ այդքան զմեզ հալածես, զի՞նչ քո ուտեմք․ և նա ասէ, ո՞չ գիտէք եթէ յայն սակս ընդ մեզ մարդիկ դարմանեն, զի զամբարս նոցա մեք պահեսցուք․ արդ՝ եթէ դուք այժմ ո՛չ մեղիցէք, համարձակ շրջեսջի՛ք ; և ոչ ի՛նչ ձեզ վնասեցից, և զայս երդմամբ հաստատեցից․ և ձեռն եդեալ ՚ի գլուխ երդուաւ․ և մկանցն համարձակեալ՝ կամեցան զանկեալ հատոտն առնուլ․ և յարձակեալ ՚ի վ՟ր կատուն կալաւ զբազումս ՚ի նոցանէ․ և ասեն, ո՞չ ապաքէն երդուա՛ր՝ անկեալ հատի ոչ առնուլ վրէժս․ և նա ասէ՝ ո՛չ երդուայ, այլ ըստ սովորութե՟ ընդ գլխով զձեռս արկի ։

Նման իսկ է առակս կեղծաւոր երդուեցողաց, զի և ո՛չ պայմանի մնան և ո՛չ ուխտի․ այլ ասեն՝ դիպող միայն ժամ գտեալ ։

## ՂԳ։

## Դ․Բ․

Ընձու զհետ վազել որսոյ՝ միջակտուր եղեալ՝ զչարեալ հարկանէր, և անիծանէր զկորիւնն իւր. և դարձեալ զղջացեալ ողբայր։

Ո՛ խստասիրտս առակս պարսաւէ, զի ՚ի դիպուա՛ծս չարս անհամբերք եղեալ՝ զմտաւորս տրտմեցուցանեն, և դարձեալ զղջանան.

## Դ․Գ․

Գողղբորէ ըմբռնեաց առիւծ. և նա ասէ՝ զմեռեալս ուտեմ, զի կենդանեաց ո՛չ յաղթեմ. իսկ դու զի յաղթող ես, անդանդաղ զայդ գործես։

Ո՛ բռնակալ իշխանս առակս բամբասէ, զի զգողս պատժեն, և ինքեանք բռնակալութ՟բ զնոյն գործեն, ըստ յանդիմանութեան առաքելոյ։

## Դ․Դ․

Ոձագար եհարց աղուէս և ասէ՝ Եթէ զի՞ է զի ես նուա՛աղ միշտ, և

դու այդքան ստուա՞ր. և նա ասէ՝ զի ոչ բազում ինչ հոգամ, և գը‐տեալ զամենայն ինչ ուտեմ:

Զանհոգութիւն առակս ցուցանէ՝ պատճառ առողջութեան, և զդիւ‐րաճաշակն անհոգութեն:

## ՂԵ:

Հարցաւ նապաստակ, թէ ընդէ՞ր այդքան զանգիտող ես. և ասէ՝ զի շունք և արծիւք, և մարդիկ ևս որ‐սան զմեզ, որով խրտուացի է երկըն‐չել:

Յառակէս խրատել 'ի դէպ է. զի բազում են թշնամիք կենաց մեր. և միշտ երկիւղիւ՛ զգուշանալի է:

## ՂԶ:

Մեղադիր եղեն ոմանք կղբու, ե‐թէ զիա՞րդ 'ի ջուր յաճախ դեգե‐րիս. և ասաց, զի ոչ շատանան զեր‐կուորիս առ կենօք առնուլ, այլ և մահուամբ մերկ 'ի մորթոյ առ‐նեն:

Զ չարաց տերանց առակս ազդէ, զի կենօք տանջի և մահուամբ:

## ՂԷ:

ԴԷ.

Ո՛վ մարդ նախատատէր որսորդ. զի
ձգելով զնստարած իւր եկեղ զնա. և
նա ասէ՝ զիա՞րդ և դու չիցես բա-
զում ամբաստանութեան արժանի, զի
նետիւ և սրով խոցոտես զիս:
Ա.յնոցիկ առակս նմանի, որ դիմեն
զոմանս պարսաւանել. և ընդդիմակ-
ցացն նախատինս դնեն, թէ ընդ էր
ոչ տան թոյլ զինքեանս՝ պարսաւանել,
որ ոչ է դիւրին առնել:

ԴԸ.

Ա՛գխա աղուէս գիրս ինչ. և գնաց
առ տգէտս ոմանս, թէ քահանայ
եմ. և կարգեցաւ քահանայել. և
յաւուրս տօնից բարձրաձայն աղօ-
թէր, և յօժարագոյն զաղ օրհնէր,
և 'ի յայլ աւուրսն հեղգայր. և 'ի
լինել զենման մատաղոյ, զարիւնն
և լեզուն, և 'ի մեղադիր լինելն՝
ասէ, նուիրեալ է՝ և այդպէս ար-
ժան է առնել. և 'ի լինելն յայտնի
կեղծաւորութեան նր՝ գնաց գաղտ:
Ա՛նկնապէս ունի առակս զխտան,

D 6 զի

զի կեղծաւորք՝ որ ընաւ չիցեն քահանայք՝ պատրեն զոգէսս, և թէ միտ դնեն, 'ի գործոց իւրեանց յայտնին. և երևելի լեալ գնան հալածեալք։

ՂԹ՝։

Ետես կապիկ զմալում զի լուանայր, և լուացաւ. Ետես զի 'ի բարձրաւանդակ ելեալ աղաղակեաց, արար և զայն կապիկ. իջեալ Ետես՝ զի գէշ ուտէր շուն, և սկսաւ կապիկ. և 'ի մեղադիր լինելն ասաց՝ այլազգի եմ. լուանամ և սրբիմ. զի զտեսանելն գործէ։

Կարգ իսկ է առակս. զի զբազում չարիս տեսանելով գործեն, և լուացեալ ասեն սրբիլ, զպատճառն 'ի մոլար առաջնորդն կուտելով։

Ճ՝։

Թագաւոր ոմն Ետես տեսիլ. զի իբրև զանձրև իջանէր աղուէս. և քարոզ հրամայեաց կարդալ, եթէ որ զիմս մեկնեսցէ տեսիլ, հազարաց դահեկան. և լուեալ այր ոմն

աղ֊

աղքատ. Եւ երթեալ ասէ՝ եթէ ես
լիս աւուրս տացես ինձ ներումն, եւ
յայտնեցից քեզ, եւ եղեալ յանապատ
շրջէր խռովալով։ Իսկ էր անդ վիշապ՝
եւ ետես զայրն տարակուսեալ, ա-
սէ, զինչ ինձ տացես՝ եթէ զտե-
սիլն յայտնեցից քեզ զթագաւորին.
եւ նա ասէ՝ զոր ինչ խոստացաւ թա-
գաւորն, կէսն քեզ եղիցի. ասէ վի-
շապն. երթ եւ ասա՝ թէ ժամանակ
է այսուհետեւ, զի մարդիկ նենգա-
ւորք եղիցին եւ խաբեբայք՝ իբրեւ
զաղուէս. եւ երթեալ ասաց. եւ հա-
ճոյ թուեցաւ ասացեալն, զի նման
այնմ իսկ էին եւ մարդիկն. եւ ետ
զհազար խոստացեալ դահեկանսն.
եւ այրն ստեաց վիշապին, եւ ոչ դար-
ձաւ անդրէն առ նա։ Իսկ զկնի դար-
ձեալ՝ այլ ետես տեսիլ, զի իբրեւ
զանձրեւ իջանէր ոչխար. եւ հրամայ-
եաց կոչել զայրն, զի նման առաջ-
նոյն մեկնեսցէ. եւ նորա զնոյն խնդ-
րեալ ներումն, եւ ամաչէր իբրեւ
զապերախտ երթալ առ վիշապն. եւ
գնաց զանձն պարտաւորելով՝ ասէ՝
մեղայ քեզ. յայտնեա՛ զերկրորդս,

Եւ

և տաց քեզ զառաջինն՝ և զերկրորդս. և մեկնեաց նմա ոչ յիշելով զյանցումն, և ասէ՝ երթ և ասա. թէ ժամանակ գայ և եկեալ է՝ զի մարդիկ իբրև զոչխարս պարզամիտք իցեն. և երթեալ մեկնեաց, և այնմ հաւանեալ՝ ետ նմա հազար եւս դահեկան. և առեալ առն տարաւ վիշապին՝ ընդ առաջին և ընդ վերջինն՝ հազար դահեկան։ Օ կնի այնորիկ դարձեալ այլ եւս ետես տեսիլ, և ահա իբրև զանձրև իջանէր սուսեր. և հրամայեաց դարձեալ զայրն կոչել, զի և զայն եւս մեկնեսցէ. և առն զնոյն խնդրեալ ժամանակ՝ և երթեալ առ վիշապն. և նա առժամայն մեկնեալ իբրև բարեկամի՝ ասէ, երթ և ասա թէ ժամանակ է՝ զի մարդիկ յարիցեն բռնաւորք և սուսերաւորք. և եկեալ պատմեաց թագաւորին, և էառ ըզհազար դահեկանն. և ել գնաց առ վիշապն, և ասէ 'ի միտս՝ թէ ընդէ՞ր այժմ թողից վիշապիս զհազար դահեկանս, և կամ զհինգ հարիւր այլ եւս բերից. այլ հարից զվիշապս և

սպա

տատանեցից · և ջանայց հարկանել զվիշապն , և ոչ աջողեցաւ նմա՝ զի խոյս ետ նմա վիշապն · և այրն զղջացեալ և խորհէր թէ չարիս գործեցի , զի թէ այլ ես հարկ հասանիցէ՝ որպէս եկից առ սա · և տեսեալ վիշապին զայրն տարջացեալ՝ ասաց նմա , ո՛վ այր դու մի՛ տրտմիր , զի ոչ յանձնէ իմէ արարեր , այլ 'ի բերմանն ժամանակէ · զի ստելն քո՝ 'ի կեղծաւորաց ժամանակին , և զղջանալն և տալն զհազար դահեկանն՝ 'ի միամտաց ժամանակին · և հարկանելն զիս՝ 'ի բռնաւորաց ժամանակին ։

Ո՛չ այլ ինչ առակս ցուցանէ՝ բայց զժամանակին գիտել զմարդիկ , և զփոփոխանալ անձանց , զի զանազան բերէ ժամանակն մարդս , երբեմն նենգաւորս , և երբեմն պարզամիտս , երբեմն բռնակալս · և նման այսոցիկ այլս բազումս ։

## ՃԻ ։

Փիղ ետ զորդի իւր ցպղատոն ուսանել իմաստասիրութիւն · և նա զա_

ռա_

ուղջինն հրահանգէր զնա գտնել 'ի լաբրանթին , և նա ոչ կարէր . ապա ասաց նմա զգլուխն խոնարհեցուցանել յերկիր , և զայն ևս ոչ կարաց . դարձոյց զնա առ հայր իւր և ասաց , 'ի տունս թագաւորի վայել է որդի քո՝ միշտ յոտն կալով , և ոչ յիմն լսարան , զի ոչ նստել կարէ , և ոչ զգլուխն խոնարհեցուցանել :

Յատուկէ աստ խրատիմք զիւրաքանչիւր կարգի ընտրել զանկաւորն՝ կազմածիւ և բարուք և այլովք այսպիսեօք :

ՃՐ :

Ուղտ եհար դարմանիչ իւր . և յոյժ ցասուցեալ ասէ . տես մի հարցես զիս յորժամ տրտում իցեմ , ապա եթէ ոչ՝ մեռանիս 'ի ձեռաց իմոց . և եհարց թէ զինչ նշան իցէ տրտմութեն քո՝ զի գիտացեալ ոչ հարից զքեզ , և ասէ՝ յորժամ տեսանես զներքին շրթունս իմ կախեալ , և զոտս իմ զի ձայն ոչ ածէ , նշան տրտմութեն է . և նա պատասխանեաց թէ յամենայն ժամ այդպէս է ,

է , և ես որպէս գիտացից ։

Օ չարաբարոյից նշանակ տայ ա-
ռակս , զի ցասուցեալ միշտ են , և
երբեմն պատճառեն եթէ տրտում
լինելով խորասու յայն սակս ոչ տա-
րաք . զի սուլթն ծածկեսցեն զչա-
րիս իւրեանց . բայց ոչ է հաւատա-
լի նենգաւոր բարուց նց ։

## Ճ՛Գ ։

Մոգ երթեալ առ քաղդէացիսն
յուսումն աստեղաբաշխութեան . և
հրամայեցաւ նմա յարուեստաւորէն
ընդ երկինս նայել , և պշնուլ . և ոչ
կարաց՝ զի բնաւորեալ է անշրջելի
ունել զպարանոց . և ասացաւ նմա
լռել . իսկ նա երկրաւոր ասաց ու-
նել իմաստութի , ըստ որում զեր-
կիր բրէ . և լուաւ թէ վ՟ա այնորիկ
ոչ պատշաճիս երկնաւորին , զի տա-
փող երկրաւորի եղեր ։

Դ ղէպ գոյ այս առակ այնոցիկ , որ
նման խոզից միշտ ընդ երկիր բևե-
ռեալ են . իբր զի յերկինս նայել , և
զգործ տեսանել ձեռաց նյ ոչ կա-
մին ։

## Ճ՛Դ ։

## ՁԴ.

Երթեալ էր կրօնաւորիլ ՚ի լեառն. և զարհուրեալ ՚ի դառնութենէ տեղւոյն, և զի խորտակէին անհեշտ լինել, աղաղակեալ փախեաւ ասելով՝ ՚ի լուսոյն ՚ի խաւարն. իբրև զի ջերմին է խաւարն, և յայնմանէ եկն կրօնաւորիլ:

Ի դէպ գոյ այս առակ այնոցիկ. որ յաշխարհէ և յանառակական վարուց գան յանապատ, և զանդրդուեալ ՚ի կրօնից և ՚ի խրատու միանձանց, դարձեալ դիմեն յաշխարհ՝ յիշելով զառաջին վարսն:

## ՁԵ.

Նախատէին զջորի՝ իշորդի լինել, և նա պարծէր մարբն, սակայն պարտեցաւ. զի հզօր է ՚ի հօրէ ազգ՝ քան ՚ի մօրէ:

Բան յայտնի է առակիս, զի անկաւոր թագաւորութիւն և այլն ամենայն ՚ի հարց՝ քան ՚ի մարց պատշաճի:

## ՁԶ.

## Ղ՛Օ։

Սրտախառնացեալ ձի, և հնազանդ լի-
նել հեծելոյն ոչ կամեցաւ, և 'ի շըր-
ջել անդր՝ պատահեաց նմա առիւծ,
և 'ի նմանէ փախուցեալ՝ հանդիպե-
ցաւ արջ, և 'ի նմանէ զերծեալ՝ դի-
պեցաւ գայլ, և այլ այնպիսիքս. և
խոնարհեալ դառնայր հնազանդելով,
ոչ վ՟ն դարմանի, այլ զի 'ի չար մա-
հուանէն ազատեսցի։

Ըստ առակիս պա՛րտ է և մեզ առ-
նել. զի ոչ միայն 'ի դէպ է հնազան-
դել այ՟ վ՟ն դարմանս աստէն առնելոյ,
այլ զի 'ի դժոխոց և 'ի յաւիտենից չար
մահուանէն ազատեսցիմք։

## Ղ՛Ւ։

Գոմէշ կամեցաւ ուսանել երկրա-
չափութիւն. և 'ի չափելն անդ տաղա-
կացաւ, և երթեալ անկաւ 'ի շամբ-
քն, և 'ի փորձապետէն իբրև զան-
ժոյժ մեղադրեցաւ. որում ասաց՝
մինչ զերկիր միայն չափել 'ի դէպ
իցէ, եղիցիմ ես ջրաչափ։

Որոյ 'ի դէպ այս առակ պիտոյից, որ
ըզ-

վտողմուտ վարս թողեալ, և դար-
ձեալ յառաջինն դառնան սովորու-
թի, և մեղադրեալք ամենն. մի թէ
պարկեշտ միայն են, այլ և մեղա-
սէրք, նոյնպէս և մեք:

## Ճ՛Ր.

Սամեցաւ գոմէշ զզարմանիչ խաղ
հարկանել, և ոչ կարաց, և տրտըն-
ջէր զի՞նչ՝ թէ զեղջեւրս իմ ուղիղ
ոչ արար, այլ ողնեալ. և զարման-
չէին պատասխանեալ ասաց. գիտէր
ա͞ծ զչար կամս քո, և վասն այն հնա-
րեցաւ՝ այդպիսի բուսանել քեզ եղ-
ջեւր:

Յարմարի առակս ոխակալաց. զի
ըստ կամաց ն͞ց՝ և ոչ երբէք տայ ա͞ծ
՚ի ձեռս ն͞ց առնուլ վրէժս:

## Ճ՛Ս.

Պատերազմել վիշապ ընդ եղջերու
կամեցաւ. և խորհէր ՚ի դաշտի, որ-
պէս թէ եղջերու ՚ի հարթոջ ոչ կա-
րէ հարկանել. և ՚ի լինել մարտին,
ոտիւք եւս պարտէր, և ՚ի յորջ մը-
տեալ՝ անտի եւս մերժէր շնչով, և
մը-

մտեալ 'ի ջուր՝ ուստի ըմպէր եղջերու, զի անդ հարցէ. կոխէր և անդ, և յամի յաղթող երևէր:

Յարմար իմն է նշանակս միայնակեցաց, և բանսարկուին մարտի. զի թէ երկրաւոր փառուք մարտնչի՝ տաոտս զերկրաւորս հարկանելով, և եթէ նեղութեան խորհրդօք յաղթահարեն, և եթէ 'ի գիտութիւն մեր՝ անտի եւս հալածեն, և ամենեքումբք յաղթող լինելին նմանն նմա:

ՃԺ.

Գայլ սպասէր այծեմանն՝ զի ննջեսցէ, որպ զի այնու ըմբռնիցէ. և գիտացեալ նորա՝ ոչ ննջէր զբազում աւուրս. և ընդարմացեալ գայլն նիրհեաց, և եկեալ առիւծ՝ սատակեաց զգայլն:

Եւ այս իսկ առաւել միանձանց պատշաճեալ է, զի սպասէ սատանայ ախտիւք ննջել, զի ըմբռնեսցէ. իսկ զըուարթութիւնք եղեալ՝ տաղտկանայ սատանայ, և եկեալ առիւծն քն սատակէ զնա:

ՃԺԱ.

ունէր. ո՛չ ուտէր, և ո՛չ ըմպէր, և ո՛չ հեծանէր. որում ասաց, անձին է մեղ, զի ոչ ժուժկալութե̃բ որսաս, այլ հեղգութե̃բ։

Օգնելն ծուլից ունի առակս, զի տակաւ աշխատեալք եթէ հոգևոր եթէ մարմնաւոր, և ոչ յաջողեալք ո՛չ յանձանց զվնասն վարկանին, այլ տրտնջեն զԱ̃յ և զխրատչաց. որ և 'ի դէպ յանդիմանին՝ զինքեանս ունել պատճառս։

ՃԺԳ.

Հրաման ել 'ի թագաւորէն կենդանեաց ցամաքայնոց՝ գալ առ նա ամենեցուն, և անյապաղ ամենեցուն ժողովեալ եկին. իսկ քարաթաւշ և մողէզ և խլուրդ՝ եկին և նոքա առնուլ պարգևս. զի այնորիկ աղաղակաւ կոչէր, զի ըստ իւրաքանչիւրոցն պատուեսցէ. և ծաղր ամենեքեան առնէին, և մեծարեաց զամենեսեան թ̃ր կարգի իւրեանց։ Եհարց և զնոսա եթէ զի՞նչ սպաս ինձ ունիցիք՝ զի պատուի՛ յինէն առջիք. քարաթաւշ, և մողէզ ասեն, քա-

րա

բամնեալ եմք, 'ի բերդս Թշնամեաց տեառն մերոյ մտանեմք, թէ յաղթել ոչ կարեմք՝ զօրս անդ հանեմք. իսկ խլուրդ ասաց, թէ 'ի քաղաքս մտանեմք՝ ականս հատանելով, և այսմ հաւանեալ պատուէեաց և զնո զքամահեալսն 'ի բազմաց:

Բնաւից կարօտ լինել մեծամեծաց և փոքունց տեսակս ցուցանէ, ոչ միայն թագաւորաց, այլ ամենեցուն՝ իշխանաց և այլոց աշխարհականաց, նմանապէս և յեկեղեցիս. զի պէտս ունին փոքունց և անարգաց:

## ՃԽԳ:

Թռչունք առ հասարակ զաղաղակ բարձին, եթէ չար է իշխանս մեր արծիւ, զի միշտ 'ի մէնջ կերակրի՝ և յայլոց որսողաց ոչ պահէ. և լուեալ ասաց՝ եթէ զինչ քան զայս ձեզ բարի, զի երկու ծնանիմ որդի՝ և զմինն ապականեմ. զի մի ծանր ձեզ եղէց. և մերձ լինելով իմ՝ ոչ ոք կարէ որսալ զձեզ. և այլ ուրեք յանպատրաստի զձեզ գտեալ՝ որսան. զուր

 զի

զինէն ամբաստանէք :

Ըստ առակիս սովոր են առնել թա֊ գաւորք ամենայն, առ իւրեանս ու֊ նել որդի՝ ժառանգ թագաւորութե̃, զի մի՛ պատճառ կործանման իցեն յաշխարհի․ և 'ի մերձ կենալն նոցա՝ չիշխէ ոք գործել չար :

## ՃԺԸ :

Ձագք ասեն ցծնողս իւրեանց, թէ ընդէ՞ր նման արծուոյ և բազէից՝ կեն֊ դանիս մեզ ո՛չ որսայք, այլ զմեռե֊ լս ոսկերս բերէք մեզ 'ի կերակուր․ և նոքա ասեն, ո՛րդեակք՝ վ՟ն այն ա֊ րար զմեզ ա՟ծ երկայնակեաց, զի ո՛չ զկենդանիս սպանանեմք՝ այլ շա֊ տիմք մեռելովք, նման քահանայից՝ և ո՛չ ըստ օրինակի իշխանաց՝ զկեն֊ դանեաց յափշտակեմք :

Արդարապէս վարիլ մեզ առակս կա֊ մի, ճշմարիտ և անկաւոր ընչիւք մե֊ ռելոց․ և ո՛չ զկենդանեաց անիրաւ֊ ութե̃ յափշտակել․ որով երկայնա֊ կեաց լիցուք յերկրի :

Է E ՃԺԹ :

## ՃԺԶ.

Բազէ զհետ մտեալ աղաւնոյ, և նորա աղաղակեալ ասէ, պատարագ եմ տէրունի՝ մի՛ ինձ մերձանչէր. և նա ասէ, պատարագն տէրունի 'ի տէրունի սեղանոյն իցէ՝ և ո՛չ աստ յօդս շրջիցի, և հարեալ եկեր զնա:

Դէմք առակիս առ այնոսիկ է, որ 'ի մահուանէ զանգիտեալք՝ ասեն թէ զանձինս մեր նուիրեալք եմք, բնակել յանապատ. զոր 'ի դէպ իսկ ասէ՝ թէ այդպիսեացդ տեղի կրօնաւորք են, և ո՛չ վայրապար շրջիլ յաշխարհի. որում ոչ խնայէ՝ այլ ըմբռնէ:

## ՃԺԷ.

Սարուժանի տեսեալ զբազմորդի զլոր՝ գոհանայր զմայ, և խնդակից նմա լինէր. և ասէ լոր, եթէ ճշմարտութեամբ գոհանաս՝ երանի՞ է քեզ. և անդէն եհար զմի 'ի ձագուցն՝ և ըմբռնեաց. ասէ լորն՝ ահա յայտ եղև, զի ո՛չ վասն իմ գոհանայիր՝ այլ վ՛ն ագահութե՛ն:

Յայտ

Յայտնէ առակս զբարս իշխանաց, զի ուրախ լինին ընդ ձեռամբ անկելոց ընդ յաղթողուածոն, ինքեանց վարկանելով փառացայն՝ քան թէ ըստացողացն:

## ՃԺԸ.

Ի ձեռաց շահենի՝ յորսալն զերծաւ ձագ հաւքայլի, և ասաց՝ եղիցի պատարագ ինձ. ծնողը արարի զնա հաւքայլն, եթէ զոր ձեռօք մատուցանես, այն է պատարագ ինձ:

Ո հովուէին ձևացուցանէ զբարս՝ առակս, զի զկերակրեալս գազանաց և զբեկեալս գայլոց՝ նուէրս ինձ ասէր լինել:

## ՃԺԹ.

Ցինն զձագս տեսեալ զհաւու՝ խոստանայր ընծայս սմին մատուցանել սարգսի, եթէ յաջողեսցէ նմ որսալ զնոսա. և յիջանել առնուլ զորսն՝ խոչ հարեալ ի նա կուրացոյց զաչս նր, և ամբաստանէր զոքեյն եթէ ոչ օգնեաց նմա. որում ծանոյց, եթէ վնասու սուրբք ոչ օգնեն՝ այլ

բարւոյ ։

Սաստէ առակս այնոցիկ, որ 'ի չար գործս զուարթս աղաչեն առիթ լինել, և ոչ օգտին. քանզի անմտութե անխմարացն ոչ անսան տէքն, և ոչ լսեն անդէպ բանից նց ։

## ՃԻ.

Օ Ջայլամն տեսեալ չիտ՝ զի մեծամեծս արկանէր ձուս, և այսմ տարփող եղեալ՝ հարցանէր ուսանիլ. որում ասաց՝ թէ հուր ճաշակեմ, և վասն այն այդքան հզօր արկանեմ ձու. և զայս արդար կարծեալ՝ ճաշակեաց հուր՝ և մեռաւ. ոչ խորհեցաւ թէ ոչ միայն այն է պատճառ, այլ և մեծութի հասակի ։

Օ վայրապար տուփանս առակս յանդիմանէ. զի զգործս տեսեալ հզօրաց՝ ցանկան, ոչ ընդ միտ ածեալ զինքեանց տկարութի. զոր թէ և ուսանել իբրև զարուեստ կամին, ծաղր զնոսա առնեն, ոչ զտիրապէս պատճառն յայտնելով, զոր 'ի դէպ է ինքեանց խնամել ։

## ՃԻԱ.

## ՃԻԳ.

Ի տօնի սրբոյ զատկին՝ եկեն Թռչունք ամենայն, և խոստովանութե հաղորդէին օրինացն, եկին ընդ նոսա սակռ և հողամաղ, և խոստովան եղեն քահանային, եթէ ոչ այլ ինչ գիտեմք խիղճ, բայց զի որսացաք մկունս և գորտունս՝ և կերաք. և նա մերժեաց զնս պիղծ կոչելով. և նք երթեալ՝ որսացեն ձագս սուրբս, և մատուցին քահանային, և այսու պատրեալ արդարացոյց զնս ասելով, ոչ գիտացիք խոստովանել, զի այն ծերացեալ և 'ի թևոց թափեն թռչունք էին. և հաղորդեցոյց զնս:

Զագահ քահանայից առակս տայ տարացոյց, զի զպոռնիկս՝ և զայլ ևս պիղծս մերժեն յեկեղեցւոյ՝ երկեցուցանելով. իսկ յետոյ դարձեալ կաշառօք ընդունին պատճառելով բանս ինչ. և հաղորդեցուցանեն ըզնոսա:

## ՃԻԴ.

Երամ ճընճղկու՝ երթեալ առ ա-

բադիլ, և աղաչեաց զնա ասեն . 'ի
բոյն քո տեղի մեզ տացես հանել
ձագս, և յօձից զձագ մեր պահես_
ցես . և նա ասէ՝ զի՞նչ ինձ առնիցէք՝
զի զայդ ձեզ առնիցեմ . և ասեն, ա_
ղօթս առնեմք, զի ձագք ձեր առող_
ջութբ մնասցեն 'ի վնասակարու_
թէ օձոյ, և 'ի հանդերձեալսն կե_
նաց արժանի լինիք յաղագս արդա_
րութե ձեր . և յաղագս այսորիկ տե_
ղի ետ նոցա . և եղև 'ի հանել նոցա
ձագ, սողաց օձ առնուլ 'ի նոցանէ,
և տեսեալ տաւեղան՝ եհար սատա_
կեաց զօձն . և շրջէր ևս շուրջ 'ի
սահմանսն, միանգամայն սատակել
զօձսն յաղագս փրկութե նց :

Ո վշտակցութի առակս ուսուցանէ
տկարաց՝ յերկաքանչիւրսն վայելել
փրկութի, սակս բարեգործութե
նոցա :

## ՃԻԳ :

Բու հրեշտակ առաքեաց առ ար_
ծիւ, և խնդրեաց զդուստր նորա
հարսն, ասելով՝ դու տուընջեան քա_
ջամարտիկ ես, և ես գիշերոյ . դաա_
շա_

շաձիւնք 'ի խնամութ՟ի . և յետ բա-
զում թախանձանաց յանձն առ-
եալ, և 'ի լինել հարսանեացն, 'ի
տունն՝ լոյս ոչ կարէր տեսանել փե-
սայն . և ծաղր առնէին բազմեալքն .
և իբրև եղև գիշեր՝ և ոչ հարսն ե-
տես լոյս, յաճախեաց և անդ ապ-
պանութն . և մի այսօրինակ փութով
լուծաւ հարսանիքն :

Ո միտս իւր առակս նմանեցուցանէ
այնոցիկ հաւատացեալ թագաւորաց
և իշխանաց, որ զդստերս իւրեանց
ըստ իրիք պատճառի՝ յամուսնութ՟ի
տան այլասեռից՝ խաւարելոց 'ի լու-
սոյ հաւատոց . ուստի և ոչ է միաբա-
նութ՟ի, այլ հարկաւոր բաժինն :

## ՃԻԳ :

Ո արծիւ աղաչել սկսան թռչունք
միանգամայն որ ընդ ձեռամբ նր՝ և
ասեն . անյապաղ զհարկ քո տացուք,
մի յարաժամ զմեզ զարհուրեցուս-
ցես . և նա դաշինս եդ, և կայր ընդ
նոսա խաղաղութ՟ի բազում ժա-
մանակս . և սկսան ապստամբել,
այլ և այպանել . և ժողովեալ խոր-

հերին և յիշխանութեն եւ ընկենուլ, պարծէր և ձընձղուկ, եթէ յաչս նորա ծրտեալ կուրացուցանեմ. և իւրաքանչիւր՝ զօրութ̅բ իւրով պարծէր. և սկսան մարտ եւ դնել. և նորա ոչ տարեալ յարձակեցաւ 'ի վերայ, և զբազուսն 'ի նոցանէ սատակեաց:

Տպաւորէ այս առակ զդէմս հաւատացեալ Թագաւորի և զանհաւատից, որ բարեպաշտութ̅բ խաղաղութ̅ի առնեն. և նոքա ապախտացեալ ապստամբեն, զպատճառս խաղաղութ̅ե ոչ գիտելով. և այպանեն, և պատերազմ եւ շարժեն, և ակամայ լինին մահ արկանել նոցա անխընայ:

# ՃԻԱ:

[illegible]աւ ընտանի՝ յըմբռնել ստացողին իւրոյ, յոյժ աղաղակէր. և ոմանք մեղադիր լինէին, եթէ զմէ՞ վայրապար կռինչս ամբառնաս. որոց ասաց, թէ զարհուրիմ, զի ոչ յամենայն ժամու վ̅ն բարոյ ըմբռնէ. զի երբեմն գլխ 'ի վայր կախէ, և բազում աւուր

ձա-

Ճանապարհ տանի. և երբեմն 'ի վե՛ր կայծականց խորովէ և ուտէ ։

Օ քայրս. տերանց առակս յայտնէ, զի ո՛չ է յամենայն ժամու բարի 'ի նոցանէ զտանել, թէպէտ և քաղցր իցեն. այլ երբեմն և չարի ակն ունել արժան է. և զգաստ կեալ, և պատրաստութբ վարիլ ըն նմա ։

## ՃԻ. Օ. ։

Օ ձագս աղաւնոյն բազում անգամ ածեալ ոմն, և գովէր զմիամտութիւն նոցա. որում իմն ասաց, ո՛ խոստովանիր այր դու. եթէ ինձ ասացար միամիտ, մի՛թէ քեզ հրամայեցաւ արիւնարբու լինել. արդ՝ յայտ է թէ չարամտութ գործես ։

Օ ըկողաց առակս բերէ նշանակս փորուց, զի գիտեն՝ եթէ անոխակալ առաքինութիւք լինին, առնել չարանան և գովեն զվարս նց, որով և յանդիմանին. զի թէ ասացաւ առաքինեաց համբերել, այլ ոչ եթէ նց հրամայեցաւ զրկել. արդ՝ յայտ է եթէ յանդգնութ գործեն ։

## ՃԻԷ:

Լրթեալք 'ի թռչնոց առին հիւր տատրակի, և տեսեալ զնա աղքատ և գձուձ կրօնաւոր, և ցուցանէին նմա տեղի անձուկ, և 'ի դէպ կրօնաւորութեան. միանգամայն զանազան պահանջէին խորտիկս, զոր նա ոչ ունէր. որոց ասաց՝ զերկաքանչիւրսդ հակառակ տեսանեմ միմեանց խորհուրդ:

Ստախօսութի՛ աշխարհականաց առակս յայտնէ. զի զկրօնաւորս տեսեալ, և զտեղի քարանձաւաց նոցա ցուցանեն. և գործեալ զպատուական կերակուր պահանջեն. որոց խորհուրդն՝ ընդդէմ միմեանց. զի թէ յանձամբս բնակիցեալք որպէս նոքա, ընդէ՞ր զանազան կերակրովք զնոսա դարմանեցէք քան կամաց նոցա:

## ՃԻԸ:

Աքաղաղ բազում անգամ աղաղակեաց՝ և ասէ, ած խոկ գիտակ է, զի մի՛ և կամ երկու ընդդրանն զը-ուարթնոցն բաւական է. իսկ բազումն՝

զունն՝ ծուլից վասն է . նա և ոչ այնու ծոյլքն զարթնուն . բայց զի ըզպատճառն հատից զպղերգլից :

Օ միտս առակիս այսպէս պարտիմք իմանալ , զի գրոց վարդապետութիւն միանգամ և երկիցս բաւական է ըզգաստից , իսկ բազումն՝ հեղգից մի է . և Թէպէտ յայտնի է քարոզչաց , զի խստասիրուք և ոչ յայնմանէ օգտին , այլ զի մի սրտաճառիցեն՝ եԹէ ոչ լուաք , վասն այնորիկ յաճախս խօսին :

## ՃԻԹ :

Պատարագ զենմանն մատուցանել ազգաւ կամեցաւ , և զբազումս հրաւիրեաց՝ և եկին յօժարեալք . և զենումն նորա էր մուկն հնացեալ , և սկսաւ ինքն հարկանել , և ապա այլքն . և եղև պատերազմ . և ըզբազմաց զաչսն փորեցին , և մերկ զմիմեանս արարին , և սկսան նզովել զպատարագ նորա , և զմատուցօղն ևս , և անացնոցա . Թէ յաշակերտացն ուսոյ՛ի . . . . զպիղծն մատուցանել , և դարձեալ պատերազմել :

Պիտելի է ամենեցուն առակս, զի զգէմս պատարագին ունին պղծոյն . . . . :

## ՃԻ.

Ազգ ձընձղկաց հրապարակ եղէն խորհել զորսողաց. իսկ ծերունի ոմն ասէ, մի՛ ժողովիք, զուցէ լուեալ զձայն թեւոց թշնամեաց, և թռուցեալ՝ զվստահութիւն ձեր յայս առնիցէք. այլ յեկեղեցիս դիմեալ աղօթեցէ՛ք առ Ած. և ոչ լուա՛ն. և յանկարծակի ձայն առին թեւոց որսողաց, և լուծաւ երախանն:

Օ մեզ խրատէ առակս. զի յորժամ չիցեմք բաւական ընդդէմ կալ թըշնամեաց, բարի է ոչ ժողովելոյ ընդ նոցա տալ կարծիս, և դիւրաւ լուծանել յահէ նց, և զվստահութիւն մեր յայս առնել. այլ խրատու իմաստնոց յեկեղեցիս յաղօթս ապաւինել:

## ՃԻԱ.

Մեռաւ որդի ագռաւու՝ և սգաց յոյժ. եկին և բազումք յողբ նորա, և

և նա ձայն մեծ յօրինեաց սգաւորացըն ասելով, զայս 'ի քրիստոնէիցն ուսայ, և ոչ 'ի յայլազգեաց. զի ժլատեալք՝ 'ի լաց, և ոչ 'ի հաց կոչեն. և զայս ագռաւ արար, զի զբան պատարագին բժշկեսցէ:

Ամենայնիւ առաւել զսովորութիւն կարգաց նոցա թիւրս ցուցանէ՝ ըդ-սգոյ, և զպատարագն, և զայլոց ևս:

## ՃԼԲ:

Սովորաբար անծեղ յանապատամիջս աղաղակէ, մանաւանդ 'ի տեսանել զոք 'ի կենդանեաց. և 'ի հարցանել ձագոյն, ասէ՝ զի թշնամիք միշտ արթուն զիս տեսցեն, և մի յորս ինչ մատաբերիցեն:

Արթունս զմեզ կամի առաւել առնել, զի յամենայնի զաղօթս և զօրհներգութիւնս 'ի բերան կալցուք. զի թշնամին ոգւոց մի փութահասցի տալ պատերազմ ընդ մեզ. մանաւանդ յորժամ տեսցուք զնա դիմեալ առ մեզ, յաղօթսն յաւելցուք:

## ՃԼԳ:

# ՃԼԳ :

Մտրեկ եա զորդի իւր յուսումն քա-
հանայութե . և նա 'ի տուխձս և 'ի
մրմունջս թևակոխեր . և խորտակեր
քահանայն՝ որհներգութեց և սաղ-
մոսաց փոյթ տանել , յորմէ սուգ և
զզջումն յոգւո գործի . իսկ նա 'ի պար
յաւելոյր , թէ հօր խնդոյ տրտմեա
ուրախութե է պատճառ , իսկ քոյդ-
տրտմութե . և թէպէտ ուսաւ յե-
տոյ՝ թէ տրտմութի այժմուս բերէ
ուրախութի յետոյ . տակայն անլուր
եղեալ , դարձաւ 'ի տուն իւր :
Ո) Երկրաւոր ուրախութեց զպատ-
ճառս առակս նշանակէ , որով զկա-
տարածն իմանան , եթէ 'ի յոգւը փախ-
ճանի , ոչ և ոչ իսկ ասաց . նմանա
պէս և հոգևորքն սուգ յուրախութի
յանգի :

# ՃԼԴ :

Հրաւիրի 'ի հարսանիս արջնազ-
ւաւ 'ի յանգեղէ , և նա հրաժարեր՝
թէ կրօնաւոր եմ և սգաւոր , և վա
այն ոչ կարեմ գալ . հարկաւորեր
հա-

հանել զսուգ նր, և յանձն ոչ առ-նուլր առնելով, եթէ յայսմ աւուր հա-նեմք, սակայն հարկաւորաբար ըզ-գենում յայլում աւուր. քանի է ըն-նաւ չհանել:

Օ կկերպարանս կրօնաւորաց ունի ա-ռակս, զի միշտ սևազգեստք են, և բնաւ ազաւորք, 'ի բնութեն հայելով մարդկան. զի թէ կամեսցի ոք ա-ւօրեայ զուարճանալ, ոչ կարէ յեր-կար լինել. և զայս գիտելով նոքա, բաղի վարկանին միշտ նոյն օրինակ կալ:

## ՃԼԵ:

Ճայեկ առ սագ աղերսէր, եթէ գիշերադեմ գոլով ես՝ 'ի բնաւից պարսաւիմ, և դու այդքան սպի-տակ և պայծառ լինելով. աղաչեմ զի ուսուսցես ինձ նմանն քեզ սպիտա-կանալ. և նա կամակից եղեալ, ա-սաց թէ միշտ նմանն ինձ լուացիս ջրով. և 'ի լուանալն ելանէր սև-նորա փետուրք, և դարձեալ նոյն գայլր օրինակս. և զայս դարձեալ աղաչէր ուսանել, որում ասաց թէ

ընդ-

ընդ լըմացմանդ զիմն ուսցիս լեզու , ապա կարիցես նման իմն լինել . և նա յանձն ո՛չ առնոյր զազգի մոռանալ զձայն . և մնաց նոյնօրինակ գիշերաղեմ ։

Մ՝եկնի այսպէս առակս . զի գիշերաղէտ են ոգով ազգ պարսից . և եկեալ առ քահանայս՝ զպայծառութիւն կամին ուսանել ոգով , զոր ասաց զխորհուրդ մկրտութեանն ամբողջ պահել . և նա լըմացեալ 'ի մեղաց փոխեալ լինէր . և դարձեալ զճշմարիտն խոստովանութիւն յանձն ոչ առնոյր . նոյն օրինակաւ մնայր սեաւ ոգւով , զոր չէ՛ արժան և ոչ ջրով մկրտել՝ եթէ զհաւատս ո՛չ ընկալցին ։

ՃԼՕ ։

Միրամարգ զգեղեցկութիւն իւր ամենեցուն յայտնեալ , և գովեալ լինէր , և խորհի թագաւորել . և ոմանք իմաստունք խրատէին . և թէ չէ՛ պարտ 'ի բանս հայել պատրանաց , զի ազգաւ է թագաւորել՝ և ո՛չ այսմ ունկնդիր եղև . և լըմեալ ար-

արքային Թռչնոց , և եկեալ եհար , և զմանկունս նր̃ և զազգատոհմն նորա . և բազումք զԹևս նորա , և զփետուրս քարշեալ մերկացուցին . Թագաւորութե ոչ եհաս , և յիւրոց գեղեցկութեց ևս Թափեցաւ :

Բազմաց ըստ առակիս պատահեաց պատրիլ , միով յաջողմամբն Թագաւորել . հրապուրեալք 'ի բանս յորդորչացն , յիւրքեանցն անկեալք , այնմ ոչ հասին :

ՃԱ :

Սերամն տեսեալ որսորդի զկաքաւի , սկսաւ խոստանալ նմ̃ պատիւ 'ի Թագաւորաց տուն , և կերակուր ըստ կամաց պատրաստել , և անդէն իսկ արկանէր կերակուր . և ոմանք խոկացեալ ասէին . չար է խոստումնդ , և զազատութի մեր խափանէք , և 'ի կատարածի 'ի կենաց ևս Թափէք . և զայլ ևս մեօք որսայք , այդմ ոչ հաւանիմք , և զոտս արձակեալ փախեան : Իսկ ոմանք պատրեալք 'ի դէմն նր̃ , զփմեալք 'ի կերակուրն և յընկերն , որ աղաղակաւ կոչէր ,

և

և անդէն ըմբռնեալ՝ եանց ընդ նո-
սա անձնային ասացեալքն յիմաստ-
նոցն ։

Չէ՛ ինչ անծայայտ առակս, զի որսորդն աստանեայ պատրէ զազգ մարդկան փափկութեք և պատուով թագաւորաց, և յայլոց ևս օրինակաց՝ որ ՚ի նոցանէ պատմի, իսկ իմաստունք ՚ի կատարածն հայելով միասուն, զի ատեն զազատութիւն խափանեն՝ և ՚ի հանդերձեալսն բնաւին կորուսանեն, փախստեամբ ՚ի չարէն ազատին ։

## ՃԼԸ ։

Արկուր նեղեալ յարփրադիտականէն, և երթեալ խոստովան եղև տատրակի՝ եթէ այնքան տանջիմ, զի և ոչ դժար իմ հանեմ՝ և յայլոց քուն աճեմ ձու. և նա խրատ տայր նմա՝ թէ աղօթս արասցես, և տեղի մի տայցես ախտի, և կնդրուկ մատուսցես նմ ։ Իսկ նա ՚ի ջեռնլոյ ոչ դադարէր, թէ և զպատարագն մատուցանէր. ուստի ոչինչ օգտէր, այլ ևս առատի յանդիմանէր ։

Օկա-

Ով փութաշուտ առակս յանդիմանէ, թէ և խստասովան լինիցին ողջախոհեց, և ընծայեսն ոչ, և յորժամ ընդդիմանայ ոչ կամիցին խորհրդոց՝ անօգուտ մնան:

## ՃԻԹ:

Ծիծառն արարեալ իւր բնակութիւն ՚ի հեծանս տան՝ յաղագս երկիւղի որսողաց. և յընտանի թշնամեացըն նեղեալ ՚ի մկանց, առեալ մազ ՚ի կատուէ՝ եդ ՚ի բոյն իւր. և ձագք նորա անվնաս եղեն:

Սա իմաստախոհութեան թռչնոյս առակս խրատէ, զի յորժամ յօտար թշնամեաց զգուշանամք ամրացեալք, և յընտանեաց նեղիմք թշնամեաց՝ ՚ի նոցունց յընտանեաց գտցուք ընդդէմ նոցա օգնական մեզ:

## ՃԼ:

[illegible]աւբալ զբոյն տատրակի քակտեալ, և իւր շինեալ. և եղև նց երթալ առ արդարն արտագիլ ՚ի դատաստան. և անդ զմիմեանս նախատէին և պարծէին, տատրակ ողջա-

հո-

խոհութե̅, կրօնաւորութեամբ, և հաւքալ պահօք քառասնօրէիւք, և նախատոլի ամ̅ն կեղծաւորութեամբ՝ և ամ̅ն զայլըս ուտելըս զվաստակսն . իսկ դատաւորն երկուցն սաստէ՝ և հարցանէ զհաւքալ, թէ ընդէ՞ր քակտեցեր . և նա ասէ՝ չինուածոյ նշանն ինչ ոչ տեսի . և վ̅ձ այն առի ինձ : Հարցանէ դարձեալ . դու էիր եղեալ զոր առեր . և նա ասէ՝ ոչ . և կամ ոչ էր երկու հեծանն եղեալ ՚ի վ̅ր միմեանց . և ասէ, եղեալ էր . Հրամայէ անդրէն դարձուցանել, նա և տուգանս ես տալ :

Օ դատաստան ուղիղ հրամայէ առակս դատել, և ոչ յատենի մեծաւունել, և կամ թշնամանել զմիմեանց դատախազաց . և դարձեալ զի զոր չիցեմք եղեալ՝ ուսուցանէ չառնուլ, և զչինուածս յայլըս՝ թէ և յուր ինչէ, չքակել :

ՃԽԲ :

Սորդուք տաղին ՚ի գնալն իւրեանց . և զմիմեանս յառաջատեն, և միմեանց տեղի տան ՚ի կռփչսն . և ոչ

նման

Նման ոմանց առանձնաբար շրջին ,
այլ և պահ միմեանց ունին :
Այսոնպէս և մեզ պարտ է մաքրանու-
թե՟ և զգոյշ կեալ . և պատրի՛ մի-
մեանց զնել . և պահել 'ի չարէ
զանձն ընկերին :

Ճ՛ԽԸ :

Ըռուխձակ աղաղակէ , կաս . և միւ-
սին ասէ՝ կամ . սակայն ո՛չ կայ , այլ
թռուցեալ այլուր երթայ .
Օստոց յայտ առնէ առակս . զի բա-
զում անգամ յանձն առնուն զճըշ-
մարտութի՟ն , և ո՛չ առնեն :

Ճ՛ԽԹ :

Ըրաւր և կւիւ 'ի կղզիս համենն
զձագս , աներկեղ սնուցանելով . և
ասեն 'ի թռչելն՝ ահա այսուհետև
անպարտ եմք , բաւական էք ձեզէն
զգուշանալ :
Հարկաւոր ցուցանէ առակս՝ յեկե-
ղեցիս սնուցանել զմանկունս քրիս-
տոնէից , և 'ի չափ հասուցանել ընտ-
րութե՟ բարոյ և չարի . և այնուհետ-
ևս անպարտ լինել 'ի նոցունց :

Ճ՛ԽԻ :

## ՃԽԴ ։

Ձկնաքաղ 'ի մեծի պասի ուտէր ձուկն, և կատաբ իբր խոտաճարակ՝ բամբասէր զնա. և նորա ասացեալ՝ Թէ 'ի յունաց և 'ի վրաց ուսայ քաջահանայից. և այսու լաւագոյն եւս եմ, զի և գինի ոչ ըմպեմ։

Օ բարս որովայնապարար ազգացն առակս յանդիմանէ կացուցանէ, զի զպատճառս ետուն բազմաց դայթագդրութեան ։

## ՃԽԵ ։

Սարսարակ Թռչուն 'ի տունէ պարաքի, և 'ի հոգալ զվաղիւն՝ 'ի գիշերի մաշի ։

Օ հոգածս առակս յանդիմանէ, զի ոչ է պարտ զմ̃ն մոռանալ զխրատ, եթէ մի՛ հոգալ զվաղիւն. զի ախտ է հոգւոյն և մարմնոյ ։

## ՃԽԶ ։

Սոխակ և ցախսարեկ, և այլք նմանք սոցին երգաբանիչք՝ ոչ միայն երգեն, այլ և սերեն անմնախանձաբար

բար զայլոց երգել ։

Մնախանձս առակս զմեզ կամի լի-
նել՝ զի և յերգելն մերում զօրհնու-
թիս, և զայլոց ևս տիրեսցուք զեր-
գելն ։

## ՃԽԱ ։

Ճպուռ այնքան երգէ, մինչ զի յա-
գոյ յղանայ և ծնանի, մերկանալով
զմարմին ։

Զօրհներգութիս սէց առակս կեր-
պարանէ. զի յղանան հոգւով զխոր-
հուրդս բարիս, և ծնանին զառաքի-
նութիս. զկերս մերկանալով զմարմ-
նոյն ։

## ՃԽԲ ։

Երկու են բանք թռչնոց, ոմն յա-
ռել, և ոմն յերգել. ոմն այն, որ ա-
ղաղակէ, ըծեամ. և միւսն, կեր ձաշ,
և այլք նման այսմ ։

Զօրինակս այսպէս իմացիր, թէ-
պէտ առելն և երգելն ինքեանց գի-
տելի է, ՚ի մեզ այսպէս լի. զոգի
և զմարմին ըծել բստ գր՚նան անձին
պարտիմք. և մարմին տՠն ուտել ձաշ.

## ՃԽԳ ։

## ՃԽԹ ։

Չիական թռչուն զծառս փորէ ։ և ջուր անձրևաւ փտէ, և որդունս ծնանի. և այնու կերակրի ։

Օ բանսարկուն սուակս ձևացուցանէ՝. զի նախ զսիրտ հարկանէ. և մեղկութե՛ք փոխեալ՝ զչար խորհուրդս ծնանի, և այնու կերակրի. զի մեղք կերակուր նր է ։

## ՃԾ ։

Բաղադր զհիմանդութե՛ բառնա տեսլեամբ ։

Սատաշամի առակս տես, որ բանիւ և տեսլեամբ բժշկէր. նկյն հիմանդք դիւրանան 'ի տեսլենէ սիրելեաց ։

## ՃԾԱ ։

Արմաւ նոյն է 'ի ծաղկել, և 'ի ծընանել ։

Նշանակ է տեն, զի նոյն է նախ քան զչարչարանս, և զկնի չարչարանաց. նմանապէս և յարութե մեր, զի նովին մարմնով յառնեմք՝ որով և մեռանիմք. նա և Ճշմարտութե մի է 'ի

 սկըզ

սկզբանն և կատարածին ։

## ՃԾԸ ։

Մեղու գործասիրութ՟բ զծաղիկ և զմոմ և զմեղր ժողովէ, և կազմէ զգործ իւր ։

Ուսի՛ր յաւակէս ըստ կարի բան գրոց ժողովել, և զլոյս օրինաց, և զքաղցրր վարդապետութ՟ն փրկչին՝ ՚ի բըժշկութ՟ն հոգւոյ ։

## ՃԾԹ ։

Մրջիւն՝ ժիր է յերկասիրութ՟ն՝ և բազմիմաստ, սակայն երկայնմտութ՟բ և համբերութեամբ յանկէ ըզգործ ։

Ծանի՛ր և յօրինակէս, զի զոր սկսանիցես զգործ բարի՝ հոգւոյ և մարմնոյ, մի՛ ձանձրութ՟բ թողուցուս ։

## ՃԾԹ ։

Զբոյն մրջեան՝ արջ փորէր, և լեզուաւ ժողովէր և ուտէր. և հնարի մրջիւն սատակել զնա. երթեալ առ պիծակ՝ և զոռեխ՝ և մժեխ՝ և շանաճանճ՝ և բրէտ, և առ նմանք՝

սոցին , և աղաչէ օգնել իւր ազգայինք · ցաւակցեն՝ հարկանեն զաչս և զլսելիս արջուն , և հարկանէ գըլուխ զքարի · և նեխի , և որդունք եւս ծնանին · և 'ի սաստկութէ ցաւոց՝ զերեսն բացեալ գոչէր · և նոյն մտեալ յորովայնն՝ խոցոտեն զաղիսն · և նեղեալ դիմէ 'ի հոսանս ջրոյ , և անչափ 'ի ներքս մտեալ հեղձանի ։

Զօրութիւն առակիս այսպիսի է , զի հզօրք զտկարս արհամարհեն , և ոչ երկնչին · սակայն իմաստութեամբ զօրանան փոքունք , և յաղթեն հզօրաց · և այս իմաստութիւն է 'ի փոքունց իբրև 'ի մեծամեծաց երկընչել ։

## ՃԾԵ ։

Յոպոպ թէպէտ արդարախոհութեամբ զծերացեալ հայր կերակրէ , սակայն բազումք անգոսնէին զնա վ՜ս զազրահոտութե՛ն · և նորա գտեալ նիւթ անուշահոտութե՛ն , 'ի լանջս իւր թաղուցանէր · սակայն զչարահոտութիւն իւր ծածկել ոչ կարէր ։

Հայլ

Հայի առակս առ այնոսիկ , որ թէ 'ի բազում ինչ գովելիք իցեն , և զմի ինչ յոռի ունիցին անմեկնելի , այլով վարուք զնա ծածկել ոչ կարեն :

## ՃԾԷ :

Չղջիկան զլոյս տեսանել ոչ կարէ , և 'ի ծերպս մտանէ վիմաց , և 'ի խորափիտս 'ի տունս . և թէպէտ չարահոտ են և զազրատես , դունդ լինին , և 'ի գիշերի համարձակին :

Նման իսկ է առակս դիւաց , և աւազակաց . զի 'ի լուսոյ փախչին պատուիրանաց` և սիրեն զխաւար անգիտութե . և դեւք ընդ տգէտս չղջին , և աւազակք և գողք սիրով դունդ լինին . թէպէտ չարահոտ են վարուք , և 'ի գիշերի գործեն չարիս :

## ՃԾԸ :

Ժողովեալ առ հասարակ թռչունք զբօսանել 'ի ծով , և ոմանք առ եզերբ շրջէին , և ոմանք խաղասայզ լինէին բնաւ : Իսկ ոմանք վերանայէին` և դարձեալ իջանէին , և հե-

ուանալ ոչ կարէին . իսկ այլք Թռու- ցեալք 'ի լերինս իջանէին , և 'ի նո- ցանէ ոմանք գային և ընկղմէին . և եղև կորուսելոյն հանդէս առաւել քան փրկելոյն :

Զմիտս առակիս այսպէս ծանիր . զի ծով աշխարհս է . և Թռչունք ազգ մարդկան , որ զբաղմունս 'ի վարս աշխարհիս . ոմանք պարկեշտութ̃բ վարին , և ոմանք բնաւին 'ի ծէր աշ- խարհի ընկղմին , և ոմանք ջանան ազատանալ բազում անգամ , և ոչ կարեն . և ոմանք 'ի լերինս կրօնա- ւորին , և 'ի նոցանէ ոմանք պատրին 'ի ցնոր. աշխարհի . և ըստ տ̃ն ձայնի՝ բազումք են կոչեցեալք , և սակաւք են ընտրեալ :

## ՃԾԲ :

Մարախ զօր անուանի ա̃յ , զի նո- րին հրամանաւ ժողովի ապականել զերկիր , և նորին անհնարկութեամբ առաքի տարմ 'ի ջնջել զնա :

Ըստ կամաց տ̃ն , առակս ցուցանէ՝ զօրաժողով լինել Թագաւորաց՝ ա- պականել զերկիր աւարաւ , և ըստ

նո-

Նորին խնամոցն զգաստանան ամենք հա-լածել զնոսա ։

## ՃԾԹ.

Մեղուաքաղ մեղուի ոչ վնասէ՝ որ-քան 'ի տան իւրում իցէ . իսկ ար-տաքոյ գտեալ՝ կլանէ զնա ։

Նանաարկուն յաղթել մեզ ոչ կարէ՝ որքան յեկեղեցի կայցեմք եւ միաբանք առ Ած . իսկ արտաքոյ գտեալ՝ ար-կանէ զմեզ 'ի բազում մեղս ։ Այս ուսանիմք ըստ առակիս ։

## ՃԿ.

Թիթռունք որքան յօդս շրջին , ոչ ինչ գործեն վնաս . իսկ խոնարհեալ յերկիր՝ ծնանին թրթուր ապական-նաւոր երկրի ։

Ըստ այսմ զայս իմանամք զառակ . զի խոհականութիւն մեր՝ որքան յեր-կինս շրջի՝ շահի եւ ոչ վնասի . իսկ թէ յերկիր խոնարհի՝ ծնանի խոր-հուրդս զազրութեան , եւ ապականէ զմարմինն ։

* Աւարտեցաւ առակք բարոյականք եւ առասպելականք ։ Դիցուք եւ սա-

կուռք առակք ստեղծականք ․ որ նման ասացելոցն կերպարանէ զճըշ-մարտութիւն , աշխարհօրէն և եկե-ղեցականապէս ։

---

## ՃԿԳ. ։

Թագաւորին Հնդկաց էր Թռչուն մի , որ արկանէր մարգարիտ՝ և ա-կանս իբրև զձու ․ և լուեալ ար-քային յունաց՝ այնմ ցանկացաւ ․ և առաքեաց հրեշտակ և խնդրեաց ․ և նա ետ ․ սակայն և նա հայցեաց զձի նորա , որ երագութեամբ անցանէր ընդ Թռչունս ․ և Թէպէտ ծանր էին միւսեանց խնդիրքն , անյապաղ եր-կաքանչիւրքն կատարէին ․ և 'ի գալ հաւուն 'ի յոյնս՝ ըստ օրինակի այլոց ածէ ձու ։ Եւ ձիոյն երթեալ 'ի հըն-դիկս՝ կաղայր , և ոչ ընաւ արշա-ւէր ․ դարձուցանէ Թագաւորն հնդ-կաց զերիվարն , մեղադրելով յոյժ ․ և նմանապէս ամբաստանելով ըզ-Թռչունն ․ և երկաքանչիւրքն յիւ-քեանցն երթեալ տեղիս , լինէին ըստ առաջին օրինակին ։

Եւ

Ո՛չ այլ ինչ տեսակս նկարագրէ՝ բայց զայս, զի իւրաքանչիւր Թագաւորութե՛ ճոխութի՛ յոյժ տուեալ է. և Թեպէտ հնարին 'ի միմեանս դարձուցանել, ո՛չ կարեն ։

## Ճ՛ԿԲ ։

Որդի Թագաւորին յունաց խնդրէր կին. և զոր հայր իւր կամէր, և այնմ ո՛չ հաւանէր, ասելով Թէ յամենայն Թագաւորութեան խնդրեսցես՝ զի բնաւ չքնաղագեղ իցէ. և հօրն յայսմանէ նեղեալ, կոչէ զդաս իմաստասիրաց հաւանեցուցանել ըզպատանին. և նոքա բանիւք իմաստութե՛ ո՛չ կարացին. և. հնարին ազնիւ կերակուր ըստ սովորութեան պատրաստելոյ՝ 'ի զանազան արկանել անօթս, ոսկեղէնս և արծաթեղէնս, փայտեղէնս և քարեղէնս, և յայլս այսպիսիս. և 'ի ժամ ճաշոյ մատուցանեն նմա, և յամենեցունց հարկեն առնուլ ճաշակ. և 'ի ճաշակելն ասաց. մի է ամենեցուն համ, ընդէ՞ր ո՛չ զանազանս պատրաստեցիք կերակուրս. ասեն իմաստունք, օ-

ըմնակ այդ քեզ լիցի. մի՛ է բնաւ յա-մենեսեան խորտիկդ, նոյնպէս մի՛ է բնաւ կազմած մարմնոյ կանանց, ճաշակ պիտոյից. և այսու հաւանի պատանին:

Զցանկասէրս առակս յանդիմանէ. զի պէտս կանանց 'ի զանազան կազ-մածս մի է. և վ՟ն որդեծնութեան տուեալ է, և ոչ է անօթ ցանկու-թեանն:

ՃԿԳ.

Իշխան ոմն էր չար. և նեղեալ 'ի նմանէ՝ որ ընդ ձեռամբ նորա էին. և ծեր ոմն խրատ ետ, թէ այլազգ ոչ զերծանիք 'ի նմանէ, բայց եթէ 'ի կարծիս արկանէք նախանձու կր-նօղն: Որ զայս լուեալ իշխանին, հիւանդացեալ մեռանի, և փրկին հնազանդեալքն:

Զբուռն նախանձն յայտնէ առակս զկանամբեաց, զի թէպէտ և խրա-տասիրուք լիցին, յայսպիսեաց իրաց բեկանին և մահանան:

ՃԿԳ.

ՃԿԴ.

Այր մին կտաւագործ բնակեալ
էր 'ի տամբատ. և իւր սովորութն
բարք էր, առ 'ի զօրացուցանել զոր-
դին՝ ասէր, Թագաւորեմք արուես-
տիւս. և 'ի հարցման որդւոյն՝ թէ
որպէս. ասաց, սանդըր շուոյն՝ իւր ըզ-
թագ դնեմ 'ի գլուխ, և զատէծ՝
իւր զասուր վերացուցանեմ, և 'ի գործ
կտաւին՝ իւր յաթոռ նստիմ, ընդ-
տիւք ունելով պատուանդան, և
զկտաւ ժողովեմ իւր աշխարհ հնա-
զանդեցուցանելով, և ձայն սանդերն
իւր զձայն փողոյ. և այլ ինչ ասա-
ցեալ այսպիսի. յայսմանէ՝ ստիպէ
զհայրն, զգուսար Թագաւորին պար-
սից խնդրել իւր, և երթեալ խընդ-
րէր. և նորա զայրացեալ հրամայեաց
սպանանել. և գիտացեալ՝ թէ 'ի
տամբատայ է այրն, հրամայեաց
ներել:

Ցուցանէ առակս, թէ ներման ար-
ժանի է առ ած, և առ մարդիկն՝ ան-
գիտութն մեղանչելն:

## ՃԿԵ։

'Ի թագաւորէն աղեքսանդրէ մեծարեալ լինէր երկրագործ՝ քան ըզհիւսն , յորժամ ապարան նմա շինէին . և նախանձ ընդ նմա կալան հիւսն և հողագործ , ոմն ասէր ըզբնակութիւն առնել , և ոմն զկերակուր . նորա լուեալ՝ իմաստասէր գոլով , կոչէ և այլ ևս իմաստունս 'ի մէջ նոցա առնել ընտրութիւն պատուոյ . և ասեն նոքա , եթէ առաջին ասացաւ ադամայ գործել զերկիր . բայց դարբնութիւն կանխաւ ցուցաւ . և զի զիւր առնէ զգործի՝ և նովաւ զհիւսան և զմշակի , վասն որոյ առաջին է պատուով . իսկ հողագործն երկուցն պէտս ունի . և այսպէս համոզեն զնա չնախանձել ։

Տեսութիւն առակիս յայն հայի , թէ 'ի հոգևոր արուեստն՝ թէ 'ի մարմնաւոր , պատուոյ արժանի են առաջինքն , թէ և 'ի միմեանց պէտս ունին ։

## ՃԿԶ։

## ՃԿԶ։

Արքային սողոմոնի հանդերձ ումն կարէր՝ արուեստիւ սքանչելի, և յօժ ուրախացեալ պանծայր. և բեհե-զագործն ընդ դէմ՛ զիւրն յարգէ արուեստ. և լռեալ արքայի կոչեաց զնա, և ընտրեաց 'ի մէջ նոցա, թէ անկապազմ է կտաւ առանց կարողի. սակայն զո՞ կարէ արուեստիւն, եւ թէ չիցէ արարեալ կտաւ. զի և ա-դամ զոտերն եգիտ, և արար հան-դերձ. և այսու առաջին ցուցաւ կը-տաւագործ՝ քան զկարող ։

Ամենայն ուրեք առակս անպարսաւ ցուցանէ զկտաւագործ, զոր բա-զումք այպանեն ։

## ՃԿԷ։

Պղնձագործ, և՛ երկաթագործ 'ի խնամենայն՝ արուեստիւ ձախաբա-նէին. և 'ի լինել հակառակութեան, յատեան եւս երթային ծերոց. և նո-քա մեծարգոյ ցուցին զերկաթա-գործ ասելով, թէ հասարակաց օգ-տակարն պատուականն է ։

Ոչ ինչ պատուական՝ քան զհասարակաց օգուտն առակս ցուցանէ՝ ՚ի մարմնաւորսն, և նմանապէս և ՚ի հոգևորսն ։

## ՃԿԲ ։

Ի թագաւորելն ոսկի՝ խնդրէր երկրպագութիւն յամենայն նիւթոց, և թագաւոր զանձն կոչէր. զի պատկեր եղև թագաւորի. և նովաւ ամբարտաւանէր գործովք ևս ՚ի վերայ արծաթագործաց՝ և այլոց. և ՚ի զայն ամենեցուն՝ ոչ եկն ցորեան ասելով, կամ՝ մինչև նախ ինձ եկեալ երկիր պագանիցէ ։

Փոփոխելի առակս ցուցանէ զնիւթականքս, զի ոչ միշտ պատուին. զի երբեմն մեծարի ոմն, և երբեմն անպատուի. վն բազում անգամ վըտանգի սովոյն նիւթք ամենայն խոնարհին ընդ ձեամբ ցորենոյ, նմանապէս և յայլսն է տեսանել. ըստ այսմ և յարուեստաւորս պատահի, որովք չէ պարտ ամբարհաւաճել ։

## ՃԿԳ ։

## ՃԿԹ։

Սաղախորթ ոմն եանց ընդ դուռն մորթեգործի, և սկսաւ այպանել, և չարահոտ զնա կոչել. և նորա երթեալ թշնամանէր ասելով, եթէ յոսկեգործաց՝ և կամ յայլոց ես նախատ լինէի, 'ի դէպ էր. դու ժահահոտ քան զիս, զիա՞րդ համարձակիս։

Զբազումս ցուցանէ առակս, թէ անհամբերք լինին, յորժամ քան զինքեանս 'ի չարեաց բամբասին. և իրաւունս տան արդարոց յանդիմանութեան։

## ՃԼ։

'Ի մէջ ծերոց բանք հինք պատմէին. այր ոմն բրուտ ծեր խօս ինչ ասէր, որում ոչ կարէին հաւատալ, և հաստատէր՝ թէ յորժամ յաշակերտութեան էի նոյ՝ լուայ. և այլ ոմն՝ թէ այդպէս ոչ լուայ յնոյ, յորժամ աշակերտեցայ նմա շինողութեան. զի նախ է լինելութիւն երկնի և երկրի, քան զլինելութիւն մարդոյն։

Զբարս

Զբարս ծերոց ցուցանէ առակս , զի
մի՛ն հնութեան բազում լինչ ստեն :

## ՃՂԸ :

Այր ոմն զանկեալ գէշ եկեր 'ի փո-
ղոցի , և անդէն ետես զկօշկակար՝
զի ատամամբք պարպէր զմորթ , և
սկսաւ բամբասել զնա . որում ա-
սաց , այր դու՝ եթէ մեռեալս մորթ
այսպէս չար է , և այն զի ոչ ուտեմ,
որչափ այդ զի մարմին ուտես . և
այն անդէն :

Զյանդգնութեան զօմանց առակս
նշանակէ . զի զմեծ չարիս զինքեանց
ոչ տեսանեն , և զայլոց սակաւն դա-
տեն ըստ ի՟ն ձայնին :

## ՃՂԹ :

Յաւուր զատկի տօնին եկին հա-
ւատացեալք հաղորդել . և զոմն հո-
վիւ բռնադատէին հաղորդել . և տե-
սեալ՝ 'ի բաց փախեաւ ասելով , ոչ
Ճա՛շ է զի կերայց , և ոչ հրամենք .
և ասեն՝ այդքան է խորհուրդն . և
նա ոչ հաւանէր առնուլ , այլ 'ի բաց
գնաց :

Զար

Զայր ամենայն ուստեք առակս ցու-ցանէ զանձգիտութիւն վայրենացեալ ոմանց, զի յերևելիս միայն հային և գայթագղին:

ՃԺԳ:

Այր ոմն յաւուրս գալիանոսի առ-ողջ ունելով կազմուածս մարմնոյ, արհամարհէր զբժիշկս, որ բնախօ-սէին զառողջութե. և անկարօտ ա-սէր զինքն արուեստին. և եղև նմա հիւանդանալ, և երթեալ առ բժիշկն՝ և 'ի նոցունց յանդիմանի. և ուսեալ զանկարութի մարմնոյ, միշտ դեգե-րէր առ նա:

Նմանք են սոքա առակիս. զմարմին կարօտ ասել բժշկի, և զհոգի՝ խրա-տու վարդապետութե. և չէ պարտ արհամարհել և ոչ զմինն. զի ոչ միշտ առողջ եմք:

ՃԺԳ.

Պատահեաց երբեմն գալիանոսի բն-նախօսել զառողջութե մարմնոյ, ը՟ նմին ասէր, եթէ ոք զգոյշ լինիցի յուտել և յըմպել՝ անկարօտ լիցի

ա

արուեստակս մերում. և լուեալ այր ոմն՝ ոչ ուտէր և ոչ ըմպէր. և յայնժամանէ չարաչար եղև նմա հիւանդանալ, և թշնամանէր զգայլխանոս. և նա լուեալ՝ ասէ, ոչ գիտես անմիտ այր դու՝ եթէ արարիչ ոչ եմք բընութեանս, այլ օգնականն. և դու ընդէր զբանն իմ ոչ իմացար, և հաւասարապէս ոչ վարեցար։

Ուսուցանէ բանս, եթէ հմտութիւն արժանէ լսել զբանս վարդապետաց՝ և զբժշկաց, և հաւատարութիւն վարել, յորմէ առողջութիւն է հոգւոյ և մարմնոյ, և յանչափութենէ խոյս տալ՝ յապաւելութենէ և ՚ի նուազութենէ. վ՚ն զի չարն յերկոսինդ է։

ՃԺԵ։

Իմաստասէր ոմն ետես զտնկագործ, զի հատանէր և տնկէր. և ասաց, այր դու՝ գործօղ ես և ոչ տնկօղ. և հմտութիւն ես պատասխանի, եթէ ՚ի դէպ է, զի և ադամայ գործել և պահել ասացաւ, և ոչ տընկել՝ զի անկարօտ էր տնկելոյ, այլ մերս ապականելի միշտ կարօտ է. և

դար_

դարձեալ եթէ տնկասէր եղեալ էր, ոչ արդեօք մերժեալ լինէր. և տար-ժանելի զերկիր գործէր միշտ սեր-մանելով:

Բանս խրատու յառակէ ուսանիմք, եթէ տնկագործք տնկասէրք լիցին, յերկար ժամանակ 'ի տնկոջ և յայ-գոջ՝ և 'ի դրախտի կայցեն. և 'ի գոր-ծել զերկիր ըստ իւրաքանչիւր ամի. մի՛ մատնիցին միանգամայն հզօր ըղ-բնականն ցուցանել զգլխաւն:

ՃԻԶ.:

Զօրական ոմն քաջամարտիկ՝ 'ի թագաւորէ հարկաւորի եղանել նա-հատակ ը̄ այլում թագաւորի միա-մարտի. իսկ նա զանգիտեալ վասն ծերութե̄, և հնարի զհերս ներկել և զմօրուս. և 'ի լինել մարտին՝ պար-տի, բնութե̄ն ոչ օգնեալ:

Նշանակ առակիս այսպիսի իմն է, զի 'ի տնէ նահատակ կոչեցաք՝ պա-տերազմել ընդ դևան. և եթէ ծեր մեղօք լիցիմք՝ և ձևանամք բարեաւ՝ պարտիմք, յորժամ զնոյնն իսկապէս ոչ ունիցիմք զառողջութի̄ բարւոյն:

ՃԻԷ.:

## ՃԿԱ.

Գող եմուտ ՚ի տուն ճոխից առնուլ ինչ. և մտեալ այլն ետես, և գան հարկանել կամեցաւ և ըմբռնել. և փութացաւ գողն և հարկանէր զայրն և ասէր. ընդէ՞ր զիս տեսանելով աշխատեալ՝ ոչ ասացեր վաստակիլ. և աղաղակեալ և կոչեալ զայլս, յատեան զգողն կացոյց. և հարցեալ դատաւորին՝ եթէ ընդ որո՞ց քարեաց գործոյ ողջոյն խնդրէիր, ես պատասխանի, եթէ նմա ոչ էր քարի, սակայն ինձ յոյժ բարի. յայմանէ ոչինչ օգտի, այլ կախել հրամայի:

Զչարագործաց զսովորութիւն յայտ առնէ առակս, զի թէպէտ զայլս վընասեն՝ ինքեանց բարի կարծեն, յորոց ոչ արդարանան. այլ աստ պատժին՝ և անդ:

## ՃԿԲ.

Զքահանայ ոմն ըմբռնեալ աւազակ՝ սպանանել կամէր. և եկն ՚ի վերայ նորա հոգի զօրութեն, և յաղթա-

հա-

Հարեաց զնա, և տանջէր ըստ ար-
ժանի գործոյն. և նա աղաչէր և ա-
սէր, քահանայ ես՝ և միշտ ասես,
խաղաղութի̄ ը̄ ամենեսեան, և այլ
ևս նման այսմ. ասէ քահանայն,
ով չարագործ՝ և ես վ̄ր զխաղաղու-
թի̄ն ամբողջ պահելոյ տանջեմ ըզ-
քեզ, զի ոչ սիրես զխաղաղու̄ի:

Ո Հակառակաբար գայլն մեզ ա-
ռակս յայտ առնէ, զի ոչ վ̄ր խռո-
վածխրութե̄ 'ի դէպ իցէ հակառա-
կել, այլ զի զխաղաղութի̄ մի՛ տա-
ցուք յապականութի̄ս՝ հնարելի է:

ՃՀԹ.

Յաղագս վայրապար շրջելոյ ման-
կանն, ասաց մայրն՝ եթէ մարդա-
գայլ է որդեակ՝ արտաքոյ. և եկեալ
մանկանն, ետես զծեր ոմն կորա-
ցեալ շրջեալ աչօք, և կարծեցեալ
մարդագայլ, անկաւ առ մայրն՝ և
ասաց. չէ՛ ինչ հեռի 'ի գայլոց՝ զի
չար էր ծերն:

'Ի դէպ է յառակէս ուսանել, եթէ
չէ՛ ինչ պատուական ծերութի̄, յոր-
ժամ չարաբարոյ իցէ:

ՃՁ.

# Ճ՚Ղ:

Թագաւոր ոմն զբաղումս կոչէր 'ի զինուորութիւն ինքեան , և խոստանայր զկնի պատերազմին թագաւորութի յաւիտենականն , և պատուիրէր մի ինչ ունել հին զէն , այլ իւրով զինու զինիլ , զի յաղթող լիցին . և յօժարեալ զինուորացն , և 'ի լինել պատերազմին , ամրացեալքն թագաւորին զինու , անխոցոտելի մնացին : Իսկ զինակիրքն հին' թէպէտ և զնորն ընկալան , վիրաւորեալք մեռան , մնացեալք անպսակք' 'ի պսակէ յաղթողացն :

Ըստ առակիս' թագաւոր Ճշմարիտ թագաւորաց ք͞ս է , և կոչեաց զբազումս 'ի հոգևոր զինուորութի . և զզէն մեղաց չհրամայէ առնուլ ընդ զինու արդարութե , զի հակառակ միմեանց են . այլ թէ ոչ' 'ի պատերազմի չարին մահանան , և պսակի արդարութեն ընդ յաղթողսն ոչ հասանեն :

ՃՂԱ:

## ՃՁԳ.

Այր ոմն տնկասէր տնկեաց ՚ի պարտէզ իւր քաջ ուղէշ, և ոռոգանէր գեղեցիկ աղբեւր զտունկն. ուստի և փութանակի պտղաբերէր. և ուրախ յոյժ լինէր տնկողն. ժանգատեսիւ և այլուստ գայր ջուր, և պտղակորոյս զձիթենին առնէր. և յորժամ ընդ այլ դարձուցանէր զնա, դարձեալ պտղաբերէր քաջապէս. և այսու ևս զուարճանայր տնկողն ։

Պարտէզս անուանէ առակս զպէսպէս զառաքինութիւնս տնկեալ յոգի առաքինասէր, իսկ ձեթենի՝ ողորմութին, զոր սերմեաց, և Է այլն ևս տնկեաց. և աղբիւր՝ գիտութին, յորմէ մարդասիրութին քաջապտուղ լինի. իսկ ժանկաջուրն ապականիչ ախտքն՝ փառասիրութեան և այլն. և ՚ի բաց դարձուցանել՝ հատանել զախտն, և վերստին ուրախանալն ընդ պտղաբերելն ։

## ՃՁԴ.

Արք երկու ճանապարհորդէին ՚ի քա-

քաղաք ուրեք երթալ հեռի , և ոմն յըսկզբանն արիաբար երթայր . սակայն եւ զետէ հեղգայր , և սաստ և անդ անկանէր 'ի ճանապարհին . և մերձ 'ի քաղաքն բնութիւնն հեղգացեալ , և յաւազակաց մեռանի : Իսկ միւս ծոյլ յըսկզբան էր , և առաւել քան զառաւել փութայր , և մերձ 'ի քաղաքն ամենեւիմբ արագէր . և մտանէր , և 'ի հանգիստն

վայելէր :

Գտեմք առակիս առ պղերգս է և արիս , զի յոյլք սակաւ ինչ ջանիւն բարութեն ճանապարհին՝ որ 'ի կեանս տանի , և ապա ծուլանան օրըստ օրէ . և 'ի կատարած կենաց՝ զոր արիանալ պարտին , բնութեն լուծանին , և 'ի ձեռաց դիւաց մեռանին , զըրկեալք 'ի մտից կենաց : Իսկ թէ և արիք 'ի սկզբանն հանդարտ իմն շարժին , միշտ ուսմամբ յառաջատեն , և մերձ 'ի մտանելն 'ի կեանս՝ ելեալք 'ի մարմնոյ առաւել փութան՝

և 'ի բարիսն վայելեն :

ՃՁԴ :

## Ճ՛ՂԳ.

Վաճառական ոմն ունէր մարգա-րիտ մի մեծ յոյժ, և անգին պատ-ուականութբ, և ակունք բազում և անգինս առաւել. և լցեալ բազ-մաց, 'ի գնել փութացան. և ե-կեալ՝ և ոչ գտեալ գինս, եդ զնա վաճառականն 'ի գլուխ սեանն քա-րի յոյժ ողորկագունի, և ասաց՝ ե-թէ ոչ է գին. այլ եթէ ելանիցէ և առնուցու ոք, նմա լիցի. և ջանա-ցեալք բազումք՝ և ոչ կարացին և ոչ միով հնարիւ. և ոմանք արիւն հանեալ յոտից, և զի մածուցիկ էր ա-րիւն, նովաւ ելեալ առին, և յոյժ ուրախացան:

Ըստ առակիս՝ վաճառական է Քս, և՝ անգին մարգարիտ՝ աւետարանն իւր, և ակունք՝ մարգարէից և առա-քելոց բանք. և սիւն է ճգունք ուս-ման. և զի արեամբ չափ է աշխա-տելի, զի 'ի գլուխ ելանիցէ՝ և ըզ-միտս աւետարանին ուսանիցի 'ի սըր-բոց:

## Ճ՛ՂԴ.

# Ճ՛ՁԴ։

Քաղաք էր հեռի թագաւորի ումեմն . յոյժ հռչակեալ գեղեցկութի͞ւ, և բազում ունէր առ ինքեն ճանապարհ, և ըստ իւրաքանչիւր ճանապարհի փութացին մարդիկ երթալ 'ի նա . և պատահեաց ոմանց յերկար և դժուար, և ոմանց գազանուտ, և ոմանց ջուր 'ի վեր, և ոմանց հարթ և կարճ . սակայն հուպ 'ի քաղաքն ամենեքեան 'ի հարթն խառնէին ճանապարհ . և 'ի քաղաքն մտեալ 'ի զանազանս հանգչէին օթևանս, և բնաւքն տեսօղք լինէին յոգնօրինակ գեղեցկութեան, յոյժ ուրախացեալք։

Բանս այսպէս է . թագաւորն տէրապէս ա͞ծ է, և քաղաք՝ արքայութի͞ւն նորա, և ճանապարհ բազում՝ պատուիրանք նորա, զի ոմանց պատահի կուսութի͞ւ երթալ, և դժուար և յերկար . և ոմանց ընդ հեթանոսս պատերազմիլ վկայութի͞ւ, և ոմանց կրօնաւորութի͞ւ ճգանց, և ոմանք մարդասիրութեամբ . սակայն կատա-

տարածն սէրն է բնաւորց . և նովաւ ըստ իւրաքանչիւր վաստակոց հատուցանի , և ուրախանան՝ արժանացեալք ըստ պսակի որ պարգևի ։

## ՃՁԵ ։

Լեառն մի էր յերկրի յոյժ ամբարձեալ և անմատոյց . 'ի նմա ամրանալ կամեցան բնակիչք աշխարհի , զի լի է ամենայն բարութ͞բ , և առողջութեամբ ընդ ամրութեն , սակայն դժուարելանելի էր , թէպէտ և բազում ունէր շաւիղ . և յելանել այնոցիկ , որ զոտս դադարեցուցանել՝ հանգչել կամեցան , սատեալք մինչ յատակն հասանէին՝ և բազում անգամ նոյն պատահէր ։ Իսկ որք ոչ կամեցան հանգչել , այլ 'ի գաւազան յեցեալ յընթանալն փութային , ելին և հանգիստ գտին ։

Միտք առակիս այսպիսի է . լեառն ամուր՝ երկինքն կենդանեաց , և կամին հաւատացեալք բնակել 'ի նա զանազան պատուիրանօք . և եթէ հանգչել յանդգնութիւն կամին , ոչ կարեն ելանել , զի անդուլ է ըն-

Թայքն. իսկ որ ոչ այլ իւիք հանդե-
չի, բայց միայն 'ի համբերութիւն
յենու, դիւրաւ ելանէ. զի հան
դիստ առաքինութե̃ն համբերութ̃ի
է. և ուրախացեալ հանդչիցի:

## ՃՂՕ.

Երկու 'ի միասին տնկեալ ծառք լի պտղովք, և միոյն գեղեցիկ էր 'ի տեսանել պտուղն, և քաղցր 'ի ճաշակել, և ախորժելի հովանին. վասն որոյ բազումք փութային 'ի նա, և մտեալ ը̃ն հովանեաւ՝ ախտացեալք հիւանդութ̃ լինէին, և ճաշակեալք 'ի պտղոյն մահանային. իսկ միւսն խոշոր 'ի տեսանել, սակայն հովանին զհիւանդս բժշկէր, և ճաշակեալ անմահս գործէր. և անսագան ուսեալք, բազումք փութացան, և զուարճացեալք ը̃ն գիւտն լինէին:

Օ այս տայ առակս իմանալ, երկու տունկք՝ մեղք և արդարութիւն 'ի մարդիկ տնկին. յառաջնումն ախորժելի կարծին մեղք. խորհիլն հիւանդութ̃ի է հոգւոյ, և գործել մահ. այդ է հովանին և ճաշակքն:

Իսկ

Իսկ առաքինութիւն յառաջնումն դժուարապայման է. այլ կամելն և գործելն՝ ոգւոյ առողջութիւն է և կեանք, զոր ունեալք՝ յետոյ հեռանան 'ի չարէն բնաւին, և ուրախանան ընդ բարին:

## ՃՂԱ:

Ծառ մի է յաշխարհի միում բարձր հասակաւ, և գեղեցիկ տեսակաւ՝ և պտղով, և ցանկալի հովանեաւ, և ամենայն թռչունք նոքա յոստս նորա հանգչին՝ և կենդանիք սոքա ընդ հովանեաւ նորա. և թէ պատահի գազանաց՝ կամ անոր թռչնոց դիմել 'ի նոսա, նոյնժամայն սատակին. իսկ սոցա ճաշակեալ 'ի պտղոյն՝ աճեն և անմահանան:

Ծառ՝ ըստ առակիդ սբ երրորդութիւն է՝ ամենաբարի նշանաւ, բունն հայր, և ոստն որդի, և պտուղն հոգի. և հովանին խնամք, և սրբքն ը հովանեաւ և յոստս՝ 'ի զօրութի նր հանգչին. և թէ բանսարկուն և դևքն յանդգնին, սատակին. և ճաշակեալ արդարք՝ անմահանան հա-

ւատովք , և աճեն ՚ի քարիս և ՚ի վարս սուրբս ։

## ՃՂԸ.

Իբրև լոճան ազգ ամենայն , կամեցան վայելել ՚ի ծառոյն . և կին մի ժանտատեսիլ նստէր յանցս ճանապարհին , և բաժակաւ արբուցանէր զնեղ յիմարութե . և առեալք՝ անկանէին և ոչ կարէին երթալ . և ոմանք ժայթքէին , և դարձեալ երթային . իսկ որ հեռի անցանէին , անխափան հասանէին և վայելէին ։
Կինն՝ սատանայ է բազմածնունդ չարեօք , և բաժակն՝ հրապոյրք պատրանաց , և դարձուցանելն՝ խոստովանելն , որով փրկին , և ՚ի հեռի անցանելն՝ հրաժարելն յաշխարհէս , որ անխափան տայ վայելել ՚ի խնամս երրորդութեն՝ և անմահական ։

## ՃՂԹ.

Սերմանող ոմն սերմանեաց յագարակ իւրում , և ՚ի բուսանելն փոխեցաւ ՚ի գարի , ՚ի կորեակ , և յորոմն , և ՚ի ցորեան ։

Այս իսկ է առակս, սերմանօղ՝ Քս, և սերմն՝ աւետարանն, և ագարակըն՝ աշխարհս, և 'ի փոխիլն 'ի զանազան աղանդս՝ յառաւել և 'ի նըւազ, և սակաւ մնալն ցորեան, զի սակաւ են ընտրեալք, Թէ և բազումք ուղղափառք.

## Ճ՛Գ.

Այր ոմն իջանէր 'ի բարձրագոյն լեռնէ՝ և յաջ իւր արեգակն, և յահեակն լուսին, և երկոտասան աստեղք 'ի լանջսն, և աղբեւր 'ի բերանոյ նորա բխէր. և 'ի չորս բաժանէր առաջս, և ընոյր զերկիր. և կենդանիք սէքք և անսէքք լուացեալք լինէին. և 'ի դառնալն առն, սակաւք վերացան, և 'ի լեառն բազում Թռչունք էին՝ ընդ նոսա խառնեցան, և մնացեալքն յառաջին կերպարանն դարձան, և այլքն Թէ և ոչ փոխեցան՝ վերանալ ո՛չ կարացին:

Առակս այս յայտնի է:

* Նաւ այս առակք աւարտեցան ընտեղծակմանք 'ի փառս Քնի այ մերոյ:
Նաւ արդ՝ մի ոք ծաղր առնիցէ զմեզ.

զի առնուլ 'ի սոցունց 'ի զրուցատրութիս և յասացուածս՝ 'ի դէպ համարեցաք, քան զաշխարհականացն վարել սովորութիւն. եթէ հաճոյ ոմանց թուեսցի, ինձ շնորհ. ապա թէ ոչ՝ թողութիւն մեզ արասցէ՝ սիրով նորին:

Սպենճեան Ռաւէկայ:



Հաւ



# ՍՐԲՈՅ ՏԵԱՌՆ

## Ներսէսի Հայոց կաթուղիկոսի

Բան ներբողական 'ի խորոտ ոգւոց համայ- նից , 'ի դիմաց Մերոյէն փառւոց փանց , յետ- բաժանչարան փառւոց :

Այբն ա՛յ՝ զքեզ մերձակա ,
ըննել խոստէ՝ թէ հաւատամ .
Տեսող գործոց՝ ըզնամ իմս ,
լըսող բանից՝ ծանի՛ր ըզնա :
Գաղտնիք սրտից՝ յաչաց նորա ,
չե՛ն 'ի ծածուկ՝ այլ յայտնի կա .
Թէ այս մըտօք՝ նայիս 'ի նա ,
անմեղ մընաս՝ միշտ յարակա :
Բենըն բանից՝ ասէ չարաց ,
սանձեա՛ զլեզուդ՝ մի՛ ընկերաց .
'Ի բերանոյ՝ քո հա՛ն 'ի բաց ,
զխօսս աղտեղիս՝ նախատանաց :
Նաեւ 'ի բա՛ն՝ բամբասանաց ,
դի՛ր պահապան՝ քոյոց շրթանց :

Զի ապրեսցիս՝ դու ’ի մեղաց ,
և յանաչառ՝ դատաստանաց ։
Ձիմըն գրովք՝ աստուածային ,
ուսուցանէ՝ խրատել լեզուին .
Բանք քո նոքօք՝ յարդարեսցին ,
գործքըդ նոցին՝ հետեւեսցին ։
Եւ մի՛ ընդդէմ՝ կալ հրամանին ,
այլ հնազանդեա՛ց՝ պատուիրանին ։
Եւ ոտըք քո՝ ո՛չ մոլորին ,
’ի ճշմարիտ՝ ճանապարհին ։
Ձայն դատողին՝ երկնաւորի ,
խրատէ ըզքեզ՝ սպասել յերկրի .
Եւ ’ի մարմնոյդ՝ քո վախճանի ,
հոգւոյդ կոչման՝ըն տերունի ։
Անալով լինել՝ յանկարծակի ,
նըման գողոց՝ ’ի գիշերի .
Զի որ սոցին՝ ակընկալցի ,
նա ’ի մեղաց՝ ո՛չ յաղթեսցի ։
Երգէ զայս միշտ՝ յականջս քոյ ,
տալ ըզհամար՝ պարտուցըն քոյ .
Որպէս մանկունք՝ ուսման գըրոյ ,
ըզտախտակին՝ համար տալոյ ։
Կամ որք վեհից՝ տնտես գործոյ ,
առ ’ի զհամար՝ պահանջելոյ .
Քանզի տնտես՝ ես քո հոգւոյ ,
և պարգևացն՝ ա̃ծայնոյ ։

Զայն

Զայն զուգակից՝ սրտին ծանիր ,
որ միշտ ասէ՝ թէ զօրացի՛ր .
'Ի խոր քնոյ՝ մահու զարթի՛ր ,
և 'ի յանձին՝ քում զգաստացի՛ր :
Յանցաւորաց՝ըս մի՛ խաբիր ,
յանանց կենաց՝ըն մի՛ զրկիր .
Զարդարութի՛ն այժմ զգեցի՛ր ,
և անդ փառօք՝ պայծառացի՛ր :
Իից լուսոյն՝ հանուրց ծագող ,
Խրատէ լինել՝ միշտ հայեցող .
Ըզմեղս ասէ՝ ատեա՛ և թո՛ղ ,
և սրբութենց՝ լե՛ր սիրեցող :
Զի որպէս չէ՛ խաւար կրող ,
պայծառ լուսոյ՝ և նըմանող .
Այպէս հոգի՝ չարեաց գործող ,
մաքուր լուսոյն՝ չէ՛ ընդունող :
Ըթն ընկերի՛ քո պատահել ,
բարեաց իրաց՝ ինչ յաջողել .
Խրատէ ըզքեզ՝ մի՛ յաչաղել ,
մի՛ մախանօք՝ ըզքեզ այրել :
Այլ թէ կամիս՝ ասէ հանգչել ,
և աստուծոյ՝ հաճոյ լինել .
Դու գոհութի՛ն տուողին յաւէ՛լ ,
այնմ որ գիտէ՝ հաւասարել :
Թոն թագ ասէ՝ արքունական ,
կամ պետութի՛ն իշխանական .

Թէ

Ինչ ընկալցիս՝ դու զմարդկան ,
մի՛ համարիր՝ քեզ սեպհական ։
Այլ ըստ հարանց՝ քոց որ անցան ,
ծանի՛ր ըզքեզ՝ ծաղկի նման ․
Եւ մի՛ լինիր՝ ամբարտաւան ,
այլ քաղցր և հեզ խոնարհական ։
Ժամանակեայ՝ զկեանքս անցաւոր ,
կարծել չըտայ՝ քեզ փառաւոր ․
Ո ի թէ 'ի կառս՝ ես թագաւոր ,
և կամ իշխան յոյժ զօրաւոր ։
Հողոյ ծընունդ՝ ես հիւթաւոր ,
յոր դառնալոց՝ ես բնակաւոր ․
Այլում գործոյ՝ կաս գործաւոր ,
յորմէ փոխիս՝ ոչ կամաւոր ։
'Ի ցասմանէ՝ դու 'ի բաց լեր ,
և մի՛ ըզքեզ՝ ատէ այրեր ․
Եւ մի՛ ըզբան՛ըս թունաբեր ,
առ 'ի սրտէդ՝ յառաջ բերեր ։
Մի՛ անողորմ՛ըն զոք տանջեր ,
մի՛ անիրաւ՝ իրըս գործեր ․
Ու մի՛ կրեսցես՝ զոր ասաց տէր ,
զտանջելըն 'ի հուր՛ըն մահաբեր ։
Իւնըն լռել՝ վարդապետէն ,
'Ի ցաւագին՝ բարկութենէն ․
Եւ յանհանգիստ՝ սրտմտութենէն ,
հանգչել ատէ՝ 'ի չար ախտէն ։

Ա.Կ

Ընկալ զսոյն՝ և 'ի տեառնէն ,
յերանութեանց՝ հեզոց բանէն .
Ծանի՛ր թէ մերձ՝ է որ դատէն ,
հատուցանել՝ քեզ փոխարէն :
Խորհրդակից՝ բարի եղեալ ,
մերժէ զխորհուրդ՝ խորամանկեալ .
Իցէ՛ 'ի քէն՝ նա հեռացեալ ,
որ յաստուծոյ՝ է ատեցեալ :
Ճշմարտութեն՝ լե՛ր հետևեալ ,
ուղիղ խօսից՝ սիրող գըտեալ .
Մ՛ինչ զի և բան՝ լոկ ասացեալ ,
լինել երդման՝ գերազանցեալ :
Ծանուցանէ՝ յոյժ ծանրագոյն ,
ըզբան երդման՝ ուրանալոյն .
Զի թէ փակեաց՝ տրն 'ի յայսոյն ,
և 'ի չարեն՝ ասաց զստոյն :
Զի՛նչ առնիցես՝ 'ի յերդնլոյն ,
միշտ 'ի յանուն՝ տն աստուծոյն .
Ու այն ստութե՛՝ յոլովագոյն ,
որոյ մեղաց՝ չի՛ք վեհագոյն :
Կենարն կենաց՝ զանցաւորէ ,
կրկի՛ն դըրամբք՝ քաղաք ասէ .
Ընդ մի՛ն մտեր՝ մերկ յարգանդէ ,
ընդ միւսն ելցես՝ մերկ յաշխարհէ :
Արդ զի՛նչ օգտիս՝ դու 'ի շահէ ,
'ի քաղաքիս՝ յայս վաճառէ .

Յոր

Յորժամ 'ի դրունըս կողոպտէ ,
մահն որ կենաց՝ թշնամին է ։
Նայեա՛ց ասէ՝ յոյժ այս բանիս ,
և մի՛ զբաղիր՝ միշտ 'ի սնոտիս ․
Մի՛ յապաղեր՝ դու 'ի չարիս ,
այլ փոփոխեա՛ փոյթ 'ի բարիս ։
Զի յորժամ ոչ՝ գիտես՝ կոչիս ,
և ըստ գործոց՝ քոց պահանջիս ․
Եւ թէ չունիս՝ պատասխանիս ,
յանլոյս խաւար՝ բանտ արկանիս ։
Ձիոյ ընդ քեզ՝ օրինակով ,
զմարմինդ 'ի կառ՝ըս ձգելով ․
Եւ կառավար՝ ուղղիչ սանձով ,
զհոգիդ ասէ՝ անդ նըստելով ։
Եւէ անմոլար՝ ճանապարհով ,
գընաս յօրէնս՝ տէառըն սիրով ,
Յայնժամ յառնել՝ըն քո մարմնով ․
Ըառաջ նո՛ր թռչիս ամպով ։
Դատն ղեկ առնուլ՝ քեզ էն՝ ձրիր ,
նմա՛նել յայս ծով տայ հմտաբար ․
Ասէ յուզել՝ ալեացն յերկար ,
ընդդէմ կացցես՝ հըզօրաբար ։
Վարեալ զհոգւոյդ՝ նաւն անդորր ,
հոգւոյն թևօք՝ առ 'ի հանճար ․
Զի հասուցես՝ անդորրաբար ,
յանքոյթ տեղին՝ խաղաղարար ։
Դէն

Ձէն ճառագայթ՝ առ ՚ի սրտէդ ;
ասէ ծագեա՛լ՝ լուսոյ հանգէտ ·
Զ բանըս բարիս՝ հե՛ղ ՚ի լեզուէդ ,
զողորմութի՛ ՚ի ձեռանէդ :
Բայց յարարչէն՝ քեզ պարգևեդ ,
մի՛ վստահարաց՝ վատներ յանպէտ ·
Թէ ոչ՝ վըճար՝ տաս ՚ի յանձնէդ ,
յորժամ խնդրէ՝ ՚ի յառողէդ :
Մերժել ՚ի բաց՝ ասէ ՚ի քէն ,
զախտըս մեղաց՝ որ ՚ի չարէն ·
Զ պոռնկականն՝ և զայլն ամէն ,
որով զաղտնի՝ նետիւք խոցէն :
Յայլ կապարձաց՝ առնու իւր զէն ,
՚ի գեղեցիկ՝ տեսլեան դիմէն ·
Եւ հարկանէ՝ զաչըս քեզէն ,
՚ի չարաչար՝ հայեցմանէն :
Յինէն ասէ՝ մանուկ ընկա՛լ ,
զայս բան խրատ՝ յաշխարհէս կալ ·
Ունայնութեց՝ ըզքեզ մի՛ տալ ,
մնոտի խաղք՝ անմըտանալ ·
Եւ յիմաստնոց՝ դրունըս գնալ ,
և յուսմանէ՝ ո՛չ ձանձրանալ ·
Զ ի մի՛ անձին՝ տաս զղջանալ ,
յորժամ հընար՝ չէ՛ յետ դառնալ :
Նորոգ ասէ՝ երիտասարդ ,
զիմաստութի՛ զգեցի՛ր քեզ զարդ ·
Մի

Մի զպատմուճան՝ըս բազմիզարդ ,
որ ըզտղայս՝ առնէ զրոճարթ :
Նայլ ըզհանճար՝ ծերոց և զխրատ ,
որով յայտնի՝ ճանաչիս մարդ .
Քանզի յիմարն՝ է հոսեալ յարդ ,
իսկ իմաստունն՝ ոսկի ըզգեալ :
Բան՝ շատ ասէ՝ ով ծերունիդ ,
հնացեալ ալեօք՝ կալ յաշխարհիդ .
Ժամ է դառնալ՝ այժմ 'ի հողերդ ,
մինչ դեռ 'ի ձեռս՝ է քեզ բարիդ :
Ո՛ առայեցեր՝ մարմնոյ գերիդ ,
մինչև 'ի յատի՝ըն տապանիդ .
Տուր 'ի մնացեալ՝ ժամանակիդ ,
մասն ինչ հոգւոյ՝ բանականիդ :
Ուսուցանէ՝ քեզ դիւրութիւնք ,
և տաս և անդ՝ լի բարութիւնք .
Սիրել զԱծ՝ ճշմարտութիւնք ,
և զքո ընկերն՝ ստուգութիւնք :
Մերժել զչարն՝ ատելութիւնք ,
գրկել զբարին՝ սիրելութիւնք .
Պահել զհոգիդ՝ քո սրբութիւնք ,
և անհրապարտ՝ խոնարհութիւնք :
Զան չար ասէ՝ զագահութիւն ,
զի շատ մեղաց՝ է ծնելութիւն .
Օի 'ի նմանէ՝ է սպանութիւն ,
նա՝ է աւար՝ և գերութիւն :

Նե

Ընտի սկըսեալ՝ է գողութիւն ,
և անիրաւ՝ դատողութիւն .
՚ի յայնմանէ՝ վաշխառութիւն ,
և զմիմեանս՝ ատելութիւն :
Պէն՝ պատուիրէ՝ կալ անբամբաս ,
՚ի յայս չարեաց՝ յորում թէ կաս .
Ո ի մի՛ հոգւոյդ՝ առնեն վընաս ,
՚ի ձախակողմ՝ըն կալով դաս :
Եւ մի՛ նախատ՝ ՚ի կեանըս յայս ,
յորում զարժանն՝ ումեք ոչ տաս .
Տուր զանցաւորդ՝ զոր ըստանաս ,
և ա՛ռ զանանց՝ըն յոր գըտնաս :
Ջնջել աստ՝ զհոգևոր ջըրովք ,
յախտից մեղաց՝ ջերմ արտասուօք .
Ո ի լաւ է լալ՝ աստէն կամօք ,
և անդ ցնծալ՝ մեծաւ փառօք :
Քան աստ խնդալ՝ պէսպէս մեղօք ,
և անդ կըճտել՝ խիստ ատամօք .
Եւ այս սակաւ՝ ժամանակօք ,
և այն յաւէտ՝ անթիւ ամօք :
Այն ըռամիկ՝ արանց հանուրց ,
ոչ նախանձել՝ խրատէ վարուց .
Եւ գինարբուաց՝ երգոց պարուց ,
մի հաղորդել՝ լըկտի բարուց :
Ո ի փոխանակ՝ աստէն ծաղուց ,
կոծումն և լաց՝ է անդ նոցունց .

Ընդ

Ընդ մեծատանն՝ այնմիկ դատուց ,
որ փափաքէր՝ կաթիլ մի ջուրց ։
Մեր զաշխարհիս՝ այս ախտաշարժ ,
ատել խրատէ՝ զաղտեղի գարշ .
Նաւ թէ մեղաց՝ մի՛ լինիք բաժ ,
ախտից տոռուամբ՝ ձգելով 'ի քարշ ։
Ոչ թէ մարմինդ՝ ասասցէ վաշ ,
հոգիդ հիւանդ՝ լինի և հաշ .
Թէ այժմ ուրախ՝ առնէ և հրաշ ,
այլ յետոյ տայ՝ քեզ մահու ճաշ ։
Աեւն վարք ասէ՝ պիղծ ընտանեակ ,
տա՛ն կամացն՝ է յոյժ ներհակ .
Նաւ որ 'ի յայս՝ սէրս է համակ ,
է աստուծոյ՝ սիրոյն դիմակ ։
Արդ մի՛ ըմպեր՝ խիստ ախորժակ ,
զանցաւորիս՝ սիրոյ բաժակ .
Այլ փոփոխեա՛ զմրրատեսակ ,
յանապականն՝ սէրըն յըստակ ։
Տունն տէրանց՝ և իշխանաց ,
խրատ ընծայէ՝ իմաստութեանց .
Թէ մի սիրէք՝ ժողովել գանձ ,
այլ՝ ըզժողով՝ բարի արանց ։
Ըզմտերիմ՝ սըն տէրութեց ,
և զհետևօղ՝ սըն քաջութեց .
Որք վ̃ն ձեր՝ 'ի մահ անձանց ,
կամաւ դիմեն՝ ոպ̃ 'ի գանձ ։

Ըկն

Րէն տառ չէ՝ բանի սկըսուած ,
այլ ակամայ՝ բըռնազբօսած .
Բայց դու զակընջդ՝ առընթեր ած ,
թէ զինչ խօսի՝ ըզմտաւ ած :
Սիրեա՛ բոլոր՝ սրտիւ զԱծ ,
և օրհնաց՝ նորա խնամ ած .
Օ հոգևոր պահեա՛ յախտից մաքրած ,
և 'ի մեղաց՝ միշտ հեռացած :
Ցօն ցուցանէ՝ միւս բան խրատ ,
որ 'ի չարեաց՝ առնէ ազատ .
Մի՛ նախանձիր՝ բընաւ ընդ մարդ ,
և մի՛ նենգեր՝ զընկեր քո գաղտ :
Օ իմաստութեամբ՝ ծածկեալն է յայտ ,
և հաստուցէ՝ փոխան քեզ դատ .
Կամ 'ի աստի՝ կեանքս անընդհատ ,
կամ 'ի վերջին՝ օրըն հաստատ :
Ւիւնն յօդական՝ միայն է տառ ,
բայց զոր յօդէ՝ քեզ 'ի խրա՛տ առ .
Յորժամ մեղուց՝ դառըն պատառ ,
քեզ երևի՝ քաղցր և դիւրառ :
Նախ քան զուտել՝ նր 'ի սպառ ,
յիշեա՛ զամօթ՝ և ըզպատկառ .
Ու չիջանի՝ բոցն որ 'ի վառ ,
և դժոխային՝ մրրքրդ յամառ :
Փիւրըն փառաց՝ է քեզ քարոզ ,
այս խըրատական՝ բանից տալըս .

Սւմ

Աւմ թէ սրտիւ՝ լինիս 'ի յոյզ ,
և տաս անձին՝ իբրև ըզգոյս :
Օ հոգիդ մաքուր՝ պահէ և լոյս ,
'ի յաշխարհիս՝ խաւարելոյս .
Եւ հանդերձեալ՝ կենաց տայ յոյս ,
պըսակ առնուլ՝ քեզ Տ͞է հաճոյս :
Քեզ կատարումն՝ է այս տառից ,
տայ ակն ունել՝ աւուրն ելից .
Ոչ ընդ սիրոյ՝ ստորակայից ,
միշտ բևեռել՝ անլոյծ կապից :
Այլ ազատիլ՝ յայժմուս ախտից ,
ընդ Ք͞ի՝ գոլ խաչակից .
Լինել սրբոց՝ քաղաքակից ,
և անմարմնոց՝ըն ձայնակից :
Սորոգ բանիս՝ այսմիկ հանդէս ,
գումարելոց ասա տիրապէս .
Երգել տաղիւ՝ հոմերապէս ,
խառնեալ 'ի հիւթըս հոգեպէս :
Բամեալ 'ի քերըս տարրապէս ,
զանազանեալ՝ տառի՛ հանդէս .
Եւ ոչ գիտնոց՝ այլ տղայապէս ,
մանկանց տուեալ՝ նուսխայապէս :
Ի թադուցեալ՝ ընդ մարմնապէս ,
երից յիմնից՝ խորհրդապէս .
Սուրբ հոգւոր՝ բանըս պէսպէս ,
որոց նպաստ՝ եղև Ներսէս :

Բան



Բան հաւատոյ վասն անեղին և եղելոյ․ բարբառանաբար ՚ի դէմս հայկական տաղից՝ չափաբերական ոգեալ ՚ի Ներսէսէ ։

Այրն անսկիզբն՝ ասէ զԾնած ,
անեղ բնութիւն՝ ոչ արարած․
Երիս անձինն՝ ըստ բաժանած,
ի մի բնութիւն՝ միաւորած ։
Բենորն բնաւից՝ ասէ անճառ ,
հասման միտաց՝ գոլ անհընար ․
Որդւոյ ծնընդեանն՝ անեղաբար ․
Հոգւոյն բղխմանն՝ աղբերաբար ։
Գըրէ ինքեամբ՝ ՚ի նիւթ էի ,
զանմիւթականն՝ իմաստ բանի ․
Ոսէ ամ էր՝ միշտ կենդանի ,
և է յայժմուս՝ և եղիցի ։
Գոյն դաւանէ՝ զերրորդութիւն ,
երեք անձինք՝ և մի բնութիւն ․
Ոչ միութեան՝ ՚ի խառնութիւն ,
ոչ բաժանմամբն՝ յօտարութիւն ։
Նորրեակ անձամբ՝ թիւ կատարեալ ․
զերրորդութիւնն ծանուցեալ ․

Ոչ

Ո՛չ քան զերիսն՝ առաւելեալ,
և ո՛չ երկուս՝ կամ մին եղեալ:
Զայս Թի՛ւ առեալ՝ ի՟ն եսայեայ,
՚ի՛ սերովբէիցն՝ որպէս և նայ.
Երիցըս սուրբ՝ ասել նըմաց,
և միանգամ՟ տ՟ր գերակայ:
Ինչպէս՝ մեզ քարոզէ,
զոր ենն ուսեալ՝ ՚ի մովսէսէ.
Սա է ա՟ծ էր՝ ՚ի սկզբանէ,
և ո՛չ եղեալ՝ ՚ի յումեքէ:
Բեթն ը՟ էրին՝ հօր զուգակամն,
զորդի ասէ՝ համաբնական.
՚Ի յովհաննէ՝ ուսեալ զայս բան,
որ որոտայ՝ յաւետարանն:
Սոյն Թարգմանէ՝ մեզ տիրաբար,
զհոգւոյն բղխումն՝ անքննաբար.
Սա է ՚ի հօրէ՝ է յատկաբար,
առնու յորդւոյ՝ անճառաբար:
Ժամանակաց՝ պարունակող,
ասէ զա՟ծ՝ գոլ ըստեղծող.
Ո՛չ ժամանակ՝ առ նա հասող,
և ոչ աւուրց՝ ըզնա չափող:
Ինն խոկապէս՝ ասէ բանին,
՚ի յոչընչէ՝ ստեղծեալ զերկին.
Հաղորդ ը՟ հօր՝ է և հոգին,
որով եղեալք՝ ամէն լինին:

է Իւսն

Լոյսն որ անեղ՝ և գերազանց ,
լուսոյ սկըսաւ՝ ասէ ստեղծուած ։
Նախ առաջին՝ ըզ հրեշտակաց .
երկրորդ զգալի՝ համատարած ։
Խաւար մածեալ՝ 'ի յանդընդոց ,
ասէ փոխեալ՝ լուսոյն 'ի բոց .
Արդ եղև տիւ՝ըն գործոց ,
գիշերն հանգիստ՝ քընոյ արթնոց ։
Ծիրըն երկնային՝ յերկրորդ աւուր ,
ձկնեաց ասէ՝ զջուրըն երկնաւոր .
Նու յերրորդին՝ տունկք բուսաւոր ,
յորում և դրախտ՝ըն լուսաւոր ։
Կապեաց ասէ՝ զանկապն ըզլոյս ,
'ի չորրորդին՝ յանօթ նիւթոյս .
Զարեգակնէ՝ և ըզ լուսնոյս ,
և զաստեղաց՝ պարումն յօդոյս ։
Հրամանն ասէ՝ արարչական ,
հան 'ի ծովէ՝ կրկին կենդան .
Զայնս որ 'ի յօդս՝ են թեւական ,
և որ 'ի ջուր՛ըս լեղական ։
Ձայն տիրական՝ ասէ եհաս ,
առ 'ի սատորին՝ հողանիւթեայս .
Բղխեալ յերկրէ՝ չորքոտանեայս ,
զանազանից՝ կենդանեաց գաս ։
Պօղեալ խորհուրդ՝ ասէ թաքուն ,
երրորդութեն՝ըն միաքուն .

Է H Սան

Սան ՚ի հողոյ` ստեղծեալ մարդոյն ,
առնել պատկեր` նման նորուն ։
Զէն ճառագայթ` առէ փառաց ,
զգեցոյց մարդոյն` զանմահ կենաց ։
Զկինն ՚ի կողէն` արար հաստուած ,
օգնել նմա եդ իր` պատուիրանաց ։
Սխալ առէ` առ ՚ի չարէն ,
և մեր պատիւն` որ յարարչէն ։
Իհան խաբմամբ` առ ՚ի դրախտէն ,
եած յերկիրս` յայս փշեղէն ։
Յայնքան մեղաց` առէ չարիս ,
որկ ըզգօնութիւն` հողեղինիս ։
Մինչ սահմանաց` բանալ երկնից ,
ծածկեալ ջըրով` զորս ՚ի յերկրիս ։
Նոյ յազգէն անոր` առէ ընտրեալ ,
միայն գըտաւ` նորովքն ապրեալ ։
՚Ի տապանին` զոր էր գործեալ ,
յորմէ կրկին` զերկիր լըցեալ ։
Շինուած առէ` զաշտարակին ,
յետ այնորիկ` յանդըրգնելին ։
Յոր խառնակեալ` լեզուք նոցին ,
Ձեռամբ իւրեանց` զայն քակելին ։
Ուսուցանէ` աբրահամու ,
Թէ հաւատոյ` տան հիմն եդաւ ։
Ուստի ած` կերպարկրեցաւ ,
և աւետեաց` որդին տըրուաւ ։

Զա

Զարեօք ասէ՝ մարդկան որդւոց,
լըցաւ աշխարհ՝ պաշտմամբ կըռոց.
Բաց յակովբեան՝ այն ծննդոց,
որ յերկաթին՝ մտին հընոց։
Պըրտուճեայ տապանն՝ ասէ զմովսէս,
եւ յակովբայ՝ զարմին հանդէս.
փրկել զնոսա՝ ա͞ծապէս,
յեգիպտոսէ՝ սքանչելապէս։
Ջանաց ասէ՝ առ ինք ձըգել,
ա͞ծըն զորդիս՝ մարդկան փըրկել.
Մատամբըն իւրով՝ օրէնս գըրել,
և մարգարէս՝ մեզ առաքել։
Նամիկ ասէ՝ զազգըս մարդկան,
զի ոչ այսու՝ առ նա դարձան.
Մեծագունի՝ կարօտացան,
հնարից դեղոց՝ բըժըշկական։
Սիրով ասէ՝ հայր առաքեաց,
զբանն ը͞ մարմին՝ միաւորեաց.
Օ որ և մաքուր՝ կոյսըն կըրեաց,
ծընեալ մարմնով՝ որով փրկեաց։
Վերնոյըն լոյս՝ ասէ մաքրից,
ծագեաց յաշխարհ՝ այս ըստուերից.
Եւ հալածեաց՝ զխաւարն յէից,
ոգւոց փայլեաց՝ լոյս ամենից։
Տիւն տայ ասել՝ բան ծայրագոյն,
վասըն բանին՝ իմանալոյն.

Ջեռուն փառաց՝ խոնարհելոյն ,
մինչև խաչի՝ համբերելոյն ։
Բամ աւետեաց՝ ձայնիւ՛ լինի ,
Թէ և բնութին՝ ձայնի չունի .
Սէ որ ննջեացն՝ ՚ի տապանի ,
Նոյն ազատեաց՝ զորս ՚ի բանտի ։
Յան ցրնծութին՝ մեզ քարոզէ ,
զմիշտ կենդանւոյն՝ յարութենէ .
Իւ զյարութին՝ մեր հաստատէ ,
Նմին նշմանն՝ յորժամ գայցէ ։
Իփեալ ըզմեզ՝ ը̄ նոյն սիրով ,
յօդեալ ՚ի գլուխն՝ ամբառնալով .
Յայն որ նըստի՝ բնութբ̄ մերով ,
հօր ը̄ աջմէ՝ բազմեալ մարմնով ։
Փառաց անճառ՝ լինի գուշակ ,
որոց զա̄ծ՝ սիրեն յըստակ .
Յորժամ մարմնովըն մերուսնակ ,
ծագէ յերկնից՝ որպէս փայլակ ։
Մէն քնոյ՝ ձևոյն իւրով ,
զմեզ յորդորէ՝ խաչակցելով .
Ոի և փառաց՝ նորա յուսով ,
հաղորդ լիցուք՝ մաքրեալ հոգւով ։

՚Նորոգ մանկունք՝ իմաստութե̄ ,
տուաք զայս բան՝ ձեզ խրախութե̄ .
Լրկ

Երկնաւորաց՝ըն գիտութեան ,
և համայնիցն՝ եղելութեան ։
Շակերտ էին՝ արարչութեան ,
և փըրկական՝ տնօրէնութեան ․
Սիրողք բանի՝ խոհեմութեան ,
զմիտըս սորին՝ տուք քննութեան ։
Նու ճաշակէք՝ համբերութե̄ ,
քան ըզ մեղու՝ յոյժ քաղցրութե̄ ․
Սակաւ է սա՝ քանակութե̄ ,
և յոգնակի՝ ունակութե̄ ։
Ի յիմաստնոց՝ ծանօթութե̄ ,
որք միտ դնեն՝ վերծանութե̄ ․
Նչին բանի՝ բան գոհութե̄ ,
մատուցանեմք՝ փառատրութե̄ ։
Զներսէս յիշել՝ մի դանդաղէք ,
որք զուարճանայք՝ըդ յայսոսիկ ․
Տուք զփոխարէն՝ըն զօր պարտէք ,
զաղօթըս սուրբ՝ զօր պաղատէք ։





Սորին օծելոյ Տն Սերովբէ՝ 'ի խորայ ճեմարանից ուսումնականաց, 'ի դիմաց այլութեանց ո-
րանաւոր շարժով:

Այրն առաջին՝ ըզքեզ տըղայ,
Հանէ յիմաստ՝ըն գերակայ·
Սրբութե՝ըն մեծակայ,
լինիս երիւք՝ ստեղամբք նորա:
Բնութիւն բանի՝ 'ի քեզ բըղխէ,
կաթն իմաստից՝ արբուցանէ·
Ձևոյն իւրով՝ վարդապետէ,
զխոնարհել՝ ուղղոյ պատմէ:
Գիմըն գանձէ՝ քեզ բիւր բարի,
գրելով զիմաստս՝ 'ի տախտակի·
Ոնս արկ 'ի քոյդ՝ պարանոցի,
որ պատուական՝ է քան զոսկի:
Դուստրն բանայ՝ քեզ գիտութե,
ըզտաճարին՝ իմաստութե·
Բաղխեալ և մուտ՝ արիութե,
մի արտաքոյ՝ մնար հեզգութե:
Արհնաւորաց՝ըն տայ ցանկալ,
'ի յերկրայնոցս՝ 'ի բաց դառնալ·
Սա

Ուսմամբ գրոց՝ զուարձանալ,
իմաստութ՟բ՝ ուրախանալ։
Զարթուցանէ՝ ըզքեզ մանուկ,
ձայնիւ՛ հնչմամբ՝ ոչ թըմբրուկ.
Մ՛ի յուսմանէ՝ ըլինիր տաղտուկ,
զի մի՛ տաս վայ՝ անձինդ՝ յատուկ։
Արամնութեց՝ նախնի գոլով,
զքեզ հրաւիրէ՝ դաւթեան երգով.
Առ 'ի չարեաց՝ հեռանալով,
խորհել յօրէնս՝ տե՛ռն սիրով։
Ընդ քեզ խօսի՝ զայս բան խրատ,
'ի յանխրատից՝ ըն կալ 'ի զատ.
Զի մի՛ տնկեն՝ զինքեանցն արատ,
'ի սրտի քում՝ ո՛չ զարմատ։
Թէ միտ դնես՝ ասէ բանին,
իմաստութե՛ն՝ սողոմոնին.
Ոչ կարօտիս՝ իմում խրատին,
քանզի նովաւ՝ խօսի հոգին։
Զուժ կալ լինել՝ ասէ յուսումն,
թէ և աշտանկ՝ առնուս յարբումն.
Հայեա՛ց յոսկին՝ որ 'ի քրայումն,
զի ծեծելով՝ առնու զմաքրումն։
'Ի նանրութեց՝ ասէ դարձի՛ր,
և տուր խաղօք՝ մի՛ ըզբաղիր.
Անմիտ մանկանց՝ մի՛ նախանձիր,
այլ իմաստնոց՝ նըմանեցի՛ր։

Լիւն լո՛ւր ասէ՝ հօր քո խրատու ,
լե՛ր օրինաց՝ մօր քո հըլու .
Վարդապետին՝ հնչմնդ կա՛ց դու ,
յորմէ շահիս՝ բան լուսատու :
Խրատէ խաղաղ՝ ը̃ ծը գըրոց ,
մի՛ ը̃ անմիտ՝ըս տըղայոց .
Նու ը̃ բանից՝ մեծ իմաստնոց ,
փոխանն վրձմանցն՝ ըզչար յիշոց :
Ոսկու նման՝ ասէ զիմաստ ,
որ 'ի յերկնից՝ իջեալ է աստ .
Բա՛ց ըզհոգւոյդ՝ քո առագաստ ,
ծըծել մտօք՝ըդ լե՛ր պատրաստ :
Կաթիլ միայն՝ թէ առնուցուս ,
'ի ջրոյն կենաց՝ ոչ մեղուս .
Ո՛չ ծարաւիս՝ ասէ յայժմուս ,
այլ և գետոց՝ բղխես առուս :
Հայեա՛ց ասէ՝ մանուկ և տե՛ս ,
զինչ 'ի տախտակ՝ըդ գծագրես .
Ո ի մովսէսի՝ դու նման ես ,
ըզգիրս ա̃յ՝ կրկին գըրես :
Ձայնէ առ քեզ՝ մանուկ ուշիմ ,
թէ ականջօք՝ լո՛ւր ըզբանս իմ .
Ուսման գրոց՝ լե՛ր մըտերիմ ,
և բարձրանաս՝ դու 'ի յերկին :
Ղամբար վառէ՝ քեզ լուսաւոր .
ենթէ իցես՝ մարդ մտաւոր .

Սըր:

Արթեա՛ն յիմաստ՛ըս հոգևոր ,
որով լինիս՝ դու երկնաւոր ։
Ջե՛ն ճանաչել՝ տայ ըզհանճար ,
ու առակաց՝ բանին յարմար .
Որով խրատիս՝ լինել արդար ,
և աստուծոյ՝ հաճոյարար ։
Ուսուցանէ՝ քեզ օրինակ ,
զորս 'ի մանկանց՝ բարեաց ունակ .
Ըզգանիէ՝ մանուկն յըստակ ,
որ և ցանկայր՝ նմա հրեշտակ ։
Յիշեա՛ ասէ՝ զմանկունս երիս ,
զաշակերտեալս՝ դանիելիս .
Ո ի թէ սոցա՝ նման մաքրիս ,
'ի հուր մեղաց՝ ո՛չ այրեսցիս ։
Նայեա՛ց և տե՛ս՝ ասէ զյովսէփ ,
զհրեշտակաց՝ նմանն 'ի դէպ .
Պահեա՛ և դու՝ զքեզ անվրէպ ,
յեգիպտուհւոյն՝ ախտին հանդէպ ։
Շնորհաց թէ ես՝ ասէ սիրող ,
դու իմաստնոց՝ լե՛ր հետևող .
Որք առ իմաստն՝ են փափագող ,
մինչև 'ի մա՛հ եղեն ճգնող ։
Ո՞վ դու ասէ՝ մանուկդ 'ի բոյս ,
նըման ա՛ռ քեզ՝ զեղիսէոս .
Որ 'ի մաշկեակ՝ըն հպելոյս ,
եթող զսէրն՝ ստորնայնոյս ։

Զարչարանաց՝ տուր համբեր ,
պանդխտութեան՝ ժուժկալ դու լեր .
Թէ հարկանիս՝ մի՛ երկմտեր .
վասն իմաստից՝ըն շահաբեր :
Կէն՝ պատուիրէ՝ պարկեշտ լինել ,
մի՛ զորովայն՝ըդ խըձողել .
Մ՝ի՛ ըզգլինսի՝ բնաւ սիրել ,
մի՛ տարաժամ՝ զբերանդ յածել :
Ջանիւ հասցես՝ տուր շնորհաց .
մի՛ ծոյլ կենար՝ և դեգերած .
Մ՝ի՛ սիրեր զքուն՝ դանդաղանաց .
մի՛ արթնութի՛ ըզքաղանաց :
Խոհիւ հանէ՝ զքեզ ՚ի բարձունս ,
դընալ հոգւով՝ ը̃ իմաստունս .
Թէ զանձըն քո՝ տաս ՚ի ձգունս ,
ելցես յիմաստ՝ըս գերաքունս :
Սիրել խրատէ՝ ըզնիւթ ուսման ,
զխոհեմութի՛՝ աւեմ և զջան .
Այլ և զխորհուրդ՝ըս մաքրական ,
որով հոգիք՝ըն զօրանան :
Վարք աշխարհիս՝ այս ծանուցեալ ,
թէ է ներհակ՝ ուսման եղեալ .
Օ՛ի որ ախտիւ՝ հոգին զանգեալ ,
նա՛ ՚ի շնորհաց՝ հոգւոյն զատեալ :
Տայ քեզ խրատ՝ բան հոգևոր ,
պահել զհոգիդ՝ ըզգուշաւոր .

Մ՝ի

Մի՛ յոք հրպել՝ արատաւոր ,
և մի՛ ունել՝ չար մերձաւոր ։
Նաբունաբար՝ վարդապետէ ,
քեզ ըղղբարիս՝ ուսուցանէ .
Հնազանդ լինել՝ ծերոց ասէ ,
որպէս օրէն՛ըն պահանջէ ։
Ծածուն ասէ՝ խոնարհամիտ ,
լեր առ ընկեր՛ըն բարեմիտ .
Եւ ոչ հպարտ՝ բարուք և բերտ ,
թէ և շընորհ՝ ունիս յոգիդ ։
Լաւէ՝ Է այս՝ բանըս յարմար ,
մի՛ շատ խօսել՝ և վայրապար .
Մ՚ի ծիծաղել՝ անկարգաբար ,
մի՛ վիճաբան՝ լինել և չար ։
Փութա՛ ասէ՝ վարժիլ անդուլ ,
և 'ի շնորհաց՝ չլինիս ամուլ .
Եւ թէ մտօքդ՝ ես բութ և գուլ ,
ջանիւ՛ զուսումըն՝ կեր և կուլ ։
Քեզ համարել՝ տայ բարեկամ ,
որ վ՛ն ուսման՝ հարուն քեզ գան .
Վանձի ապտակ՝ և գաւազան ,
յետոյ բազում՝ փառըս քեզ տան ։

՚Նախանձելի՝ մարդկան լինիս ,
թէ զվերոյգրեալդ՝ 'ի միտ ունիս .

Ե՛կ բե՛ր մանուկ՝ զունկն քո յիս ,
լո՛ւր և անսա՛ իմում բանիս :
Ռաբուն լինիմ՝ բղխմամբ սրտիս ,
ուսուցանել՝ քեզ ըղձալիս .
Սիրեա՛ զուսումն՝ որով պատուիս ,
'ի յերկնայնոց՝ և 'ի յերկրիս :
Երանելի՝ և մեծ լինիս ,
եթէ զերկիւղ՝ տ՟ն ուսանիս ,
Սիրոյ 'ի բա՛ց՝ լեր աշխարհիս ,
և յո՟յ՝ սէրըն վառիս :
Ինձ լո՛ւր որդեակ՝ հօր քո խրատիս ,
և յուսմանէ՝ մի՛ ծուլասցիս .
Եթէ 'ի յայս՝ սէր բորբոքիս ,
անանց կենաց՝ ժառանգ լինիս :





Նորին տէր Յին Մեսրոպայ տապեան՝ տաղերս հաղթանակաց :

Ա͞ծ անեղ՝ անհասական ,
հայր գթութե͞ց՝ ինձ ողորմեա .
Բանդ ՚ի հօրէ՝ անճառ ծընունդ ,
որ մարմնացար՝ ՚ի յիս գըթա :
Գոլեալ հոգիդ՝ ս͞բ աստուծոյ ,
որ նորոգող՝ ես ողորմեա .
Դաւանողիս՝ ա͞ծութեանդ ,
երրորդութի՛՝ ս͞բ յիս գըթա :
Երկնաւորաց՝ և անմահից ,
բանիւ ստեղծող՝ ինձ ողորմեա .
Զազգըս մարդկան՝ յօրինեցեր ,
ձեռամբ պատկեր՝ քո յիս գըթա ;
Էրանուհոյ՝ աստուածածնին ,
ս͞բ ծնընդեամբն՝ ինձ ողորմեա .
Ընտրեալ մեծի՝ կարապետին ,
մկըրտութե͞՝ըն յիս գըթա :
Թագաւորացն՝ է͞ք քեզ յերկինս ,
առաքելոցն՝ ինձ ողորմեա .
Ժառանգողացն՝ ըզ կեանսդ անճառ,
աղաչանօք՝ըն յիս գըթա :

Իւ

Ուրաքանչիւր՝ քոց սիրողաց ,
մաքուր հայցմամբքն՝ ինձ ողորմեա՛ .
Լուսապսակ՝ քոց վկայից ,
հեղմամբ արեամբ՝ըն յիս գըթա՛ :
Խաչակցելոցն՝ ը քեզ հոգւով ,
պաղատանօքն՝ ինձ ողորմեա՛ .
Ծարաւելոցն՝ յաղբեւր սիրոյդ ,
արբո՛ և զիս՝ և յիս գըթա՛ :
Կենարարիդ՝ չարչարանօքն ,
որ յաղագս իմ՝ ինձ ողորմեա՛ .
Հարմամբ ծնօտի՝ քո ապտակին ,
'ի ծառայէն՝ 'ի յիս գըթա՛ :
Ձաղաղանօքն՝ 'ի զինուորաց ,
և եղեգամբքն՝ ինձ ողորմեա՛ .
Ղօղանջանօքն՝ հայհոյութե՛ ,
և՛ վասն թքոյն՝ 'ի յիս գըթա՛ :
Ճշմարտապէս՝ խաչելութեամբդ ,
անպարտականդ՝ ինձ ողորմեա՛ .
Մածմամբ մարմնոյդ՝ 'ի փայտ խաչին ,
դբ բևեռօք՝ըն յիս գըթա՛ :
Յանպարտական՝ կողեդ հոսման ,
արեամբ և ջրով՝ ըն զիս լըուա՛յ .
Նորոգելով՝ 'ի հնութենէ ,
կողին՛ պարտեալ՝ հինն ադամս :
Շարժմամբ ահին՝ երկրի հիմանց ,
անշընչութեամբ՝ քո ողորմեա՛ .

Ու

Որ զմարդկայինն՝ հոգիդ յաւանդ ,
ետուր առ հայր՝ քո յիս գըթա՛ ։
Չարչարանօքն՝ անարգաբար ,
համբերելովն՝ ինձ ողորմեա՛ .
Պսակաւ փշրոցն՝ ըզփուշ մեղաց ,
բարձեր 'ի մէնջ՝ և յիս գըթա՛ ։
Ջամբեալ վասն իմ՝ 'ի ծարաւին ,
զդառըն լեղին՝ ինձ ողորմեա՛ .
Ռետին քաղցու՝ մեզ արբուցեր ,
մարմնով հարեամբ՝ըդ յիս գըթա՛ ։
Սրով եդար՝ և արտասուօք ,
'ի տապանին՝ ինձ ողորմեա՛ .
Վէրաբերեր՝ քո յարութեամբդ ,
զմարդիկ 'ի կեանս՝ 'ի յիս գըթա՛ ։
Տէր ըզքնութիւնս՝ արձակեցեր ,
և արձակես՝ այժմ ողորմեա՛ .
Րոտեա՛ զմարմինս՝ իմ ը̄ հոգւոյս ,
'ի գալըստեան՝ քո յիս գըթա՛ ։
Ցընծացայ ես՝ բերկրեալ յուսով ,
քոյին ծնընդեամբդ՝ ինձ ողորմեա՛ .
Ւիւսմամբ փառաց՝ պըսակելոց ,
աղաչանօք՝ըն յիս գըթա՛ ։
Փըրկիչ յորժամ՝ գայցես փառօք ,
զիս նորոգեա՛ և ողորմեա՛ .
Քեզ գոհութիւն երգեմք ընդ հօր ,
և ը̄ հոգւոյդ՝ այժմ յարակայ ։

Ար



Նորին ոճով ընդ Սեբաստեան հայոց հանճարեղինոյ յերաշխաւորան աստուածային սողոմոնին , որ եւ- րում ծեռամբն գրեալ :

Սծեղէն՝ հոգւոյն 'ի սմա ,
խաղաղութե՟ան՝ անուն արքա .
Նարբուեցիւ՝ իմաստութե՟ ,
զորդիս խրատեաց՝ զգօնութե՟ :
Գեղեցկադիր՝ բանիւն 'ի կարգ ,
գրիչ եղև՝ հոգւոյն արագ .
Դաւթի որդի՝ վեհ քան ըզմարդ ,
մարգարէին՝ ա՟ծազարդ :
Երրեակ տառիւ՝ վերաբերէ ,
զմարդիկ յերկինս մակագրէ .
Զգեստ արկանէ տղայոց բեհեզ ,
զհնազանդ լինել՝ ըն հօր և հեզ :
Կին շնորհօք՝ պըսակ կապէ ,
մանեակ ոսկի՝ զպարանոցէ .
Ըստ մանկական՝ տիոց նոցայ ,
նոյն և խոստում ըն յարակայ :

Թըմբ

Ամբրեալ հոգիս՝ առնէ զուարթ,
յայս չանկանել՝ դառն որոգայթ.
Ժամանակեալ՝ զկենցաղըս յոյժ,
առէ զանկեալսն՝ ՚ի սմա անբոյժ։
Իբրև երազ՝ խոր գիշերի,
կամ պըղպըջակ՝ ինչ կաթուածի.
Այն ճանապարհ՝ լըն հետևել,
տանի ՚ի գուբ՝ խորին սանել։
Խորագուսեալ՝ մանկանցն ՚ի յուխս,
խրատ ընծայէ՝ սա հոգեբուխ.
Ծածուկ բարեաւ՝ խորհրդազգած,
միշտ ՚ի յոգւոջ՝ ունել զաստուած,
Կենսարարին՝ սպասել համակ,
ոչ մոռանալ՝ ոք զյիշատակ.
Հայել վերջին՝ օրն և ՚ի մահ,
՚ի սպառնալեացն՝ երկեւղ և ահ։
Զայնըն հաւուն՝ յոյժ գեղապանձ,
որով գայցեն՝ մեռեալքն ՚ի դարձ.
Պօղեալ սարսեն՝ դատերքն ՚ի խաղ,
ողբան տըկար՝ ձայնիւ նըւաղ։
Ճառագայթից՝ լուսոյն ճաճանչ,
լուսին սաստեղք՝ ձեմեալ զուարճ.
Մեծին ծագմամբ՝ չփայլեն այլում,
մինչ փայլակէ՝ լոյսն անպատում։
Յայնժամ թուչին՝ ՚ի կառս ամպոյ,
արդարք նըմին՝ խիտ մարախոյ.

Նը

Նուշին ծաղկէ՝ գուշակ գարնան ,
գունով պճնին՝ վկայքն արեան :
Շրջեն կոծով գնացողքըն զարշ ,
կարապար մեղւացն՝ անկցին 'ի քարշ .
Որք 'ի բարձունս՝ հայլին լուսո ,
ապշեն դողան՝ յահեղ բոցո :
Չէ սխտանի՝ արծաթըն յինչ ,
և ոչ ոսկւոյն՝ դեղ զարդարիչ .
Պարօղն անուշոյ՝ հասցէ վըրէպ ,
պատկեր եւ թանց՝ դարուցս 'ի դէպ :
Ջրոյն կենաց՝ սափորն 'ի մէնջ ,
այն խորտակի՝ յաղբերըն մէջ .
Ռահեալ սրբոց՝ըն լուսավառ ,
գնասցեն յերկինս՝ 'ի տունն անձառ :
Սա միջակին՝ է խորան մարդոյս ,
յորժամ չարժի՝ ախտիցըն բոյս .
Վերադառնայ՝ ներհուն բանով ,
երգէ զիմաստս՝ երրորդ տառով :
Տիրականի՝ մասինս ազատ ,
որ յերկրայնոց՝ կրիցս 'ի զատ .
Րաբունական՝ սիրոյն տիփար ,
կացուցանէ՝ անմիջաբար :
Ցընծալ բերկրիւ՝ ը̄ հրեշտակաց ,
'ի յառագաստն՝ օրիորդաց .
Ւիւսակ հարսին՝ սիրով կիզու ,
մարգարտայեռ՝ և լուսատու :

Փե

Փեսայն իջմամբ՝ ցօղատարափ ,
համբուրէ զտեղ՝ըն լուսոյ արփ .
Բայր կոչելով ա̅ծակառք ,
յաննխութական՝ տարեալ քաղաք :

Մ. Նոր բանաձայնութիւն պատմէս յեղանակէ :

Քաղցրագունիս՝ այս բաղձանօք ,
լցեալ հոգիս՝ մեռեալ մեղօք .
Փափաքեցի՝ օրըստանորոփ ,
Եւ որ ընաւեց՝ բարեաց անփոփ :
Իւրաքանչիւր՝ բան կենսատու ,
պէսպէս ցաւոց՝ իմ լուսատու .
Ընծամ հոգւով մինչ կարդացից ,
Թէպէտ և ո՛ք՝ ոչ եմ յաղտից :
Բուժէ զմարմին՝ըս հոգևոր ,
զմիտըս գործէ՝ բանից աղբեւր .
Տանել զանտեսն՝ ամենագէտ ,
հայել յանմխութ՝ լոյսն ոպ դէտ :
Սան այսօրիկ տաժանելով ,
ձեռամբ ըղձա՝ գըծագրելով .
Ստացուած բարեաց՝ երևելոյս ,
և յետ մահու՝ յիշումն և յոյս :
Սեռին քաղցու՝ կենաց բարբառ ,
պտղաբերէ՝ անմահ այս ծառ .
Զերմ արտասուօք՝ ջուր կաթուածոյն,
'ի լըսողաց՝ հոսէ յոգւոյն :

Այս

Պատառ վիրաց՝ լինի և կապ,
Թէ ոչ սրտին՝ լինի պարապ.
Ջէ՛ նախանձոտ՝ սա ուսուցիչ,
քանզի ձրի՝ է պարգևիչ։
Սրոք մտաց՝ ըղձերանոյ,
դուռըն բանայ՝ այս հանճարո.
Շնորհէ յառատ՝ գանձուցն իւր ուշ,
իւղով մարզէ՝ 'ի հոտ անուշ։
Նարդոս քրքում՝ զմուռ ու հալուէին,
կազմէ քառիւք՝ զառաքինին.
Յանդաստանէ՝ բերեալ խնկոյ,
մեռելութի՝ ախտից մարմնոյ։
Մերժէ 'ի բաց՝ զախտըս տարտամ,
գործովք բարեաց՝ առնէ փարթամ.
Ճառից սորա՝ լսել պատշաճ,
կենդանի ձայն՝ հնչէ յականջ։
Ղամբար լուսոյ՝ մտաց նըրուաղ,
նեխեալ հոգւոց՝ լինելով աղ.
Ձիոյն նըման՝ մեծատանց սանձ,
և աղքատաց՝ յիմաստից գանձ։
Հաց հանճարոյ՝ սորա անմահ,
եկա՛յք կերա՛յք՝ սովեալք 'ի մահ.
Կացցէ 'ի սիրտըս ձեր յըստակ,
խառնարանին՝ անմահ բաժակ։
Օրաւէյայ՝ բանիցս անբիծ,
և տարփացայ՝ դըրօշմել 'ի գիծ.
Կան

Խանդակաթեալ՝ սաստ միջամուխ,
հասի յաւարտ՝ վախճան կանուխ ։
Ի ծծի զըղձումն՝ իմ անձկացեալ,
'ի սոյն ժամու՝ վարժ մամբ կրթեալ ։
'Ի ժամանակ՝ յոյժ անբարի,
մինչ գերմանիկն՝ առեալ լինի ։
Ժամանեցին՝ աշխարհի գոյժ,
քրիստոնէից՝ գոլով անոյժ ։
Թուական հայոց՝ հինգ հարիւր ութ.
նա և ութսուն՝ երկուք և ութ ։
Ընտրեալ գլուխ՝ գոյր հայկազին,
գրիգորիոս՝ պահլաւունին ։
Որ 'ի յաթոռ՝ լոյս ընդ լուսէ,
շնորհօք լցեալ՝ 'ի քրիստոսէ ։
Զարմ և ժառանգ՝ հօրն աննուազ,
համանըման՝ և ոչ նուազ ։
Եղբայր երէց՝ գոլ յարգանդէ,
իմ ներսէսի՝ որ զայս ոգէ ։
Պարծեալ եղբարց՝ երկուց ծնունդ,
ընդ աշխարհի՝ գոլ բարեսնունդ ։
Պօղեալ վասիլ՝ իշխանն առոյգ,
և զօրավար՝ ընտրեալ 'ի կարգ ։
Բայց և ծնողաց՝ մեր հանդերձ քերբ,
լիցի յիշումն՝ յաւուրն անբերբ ։
Աւարտ բանիս՝ Տէր ողորմեա,
առ հասարակ՝ մեզ և նոցա ։

Ա



Նորին 'ի Մաղաքիան առաքեալ :

Սա մարգարէ՝ ճեծարան ,
և իմաստուն՝ յոյժ խոհական .
Սա օրինակ՝ է աններման ,
տողովմնութն՝ Ճշմարտութեան :
Սա 'ի Հօրէն՝ իւր սեպհական ,
առնու բղխաքն՝ և զգուշական .
Սապէս և որ՝ յիւր Հայրական ,
Նստի յաթոռ՝ ճծական :
Նախ լինել՝ այն Թագաւոր ,
Երկուց կամանց՝ Նախ դատաւոր .
Որ վրձռաւ՝ փողակաւոր ,
Եցոյց զարեան՝ ըն մերձաւոր :
Որպէս և տոն՝ իմ դատելով ,
խաչիւ զիշխանն՝ ըն բռնաւոր .
Որով կրկին՝ գայ ահաւոր .
դատել ըզսեռ՝ քս բանաւոր :
Պամբարափայլ՝ շինեաց տաճար ,
այս տողովմն՝ խորանայար .
Յուր երկաթոյ՝ չհնչեալ 'ի քար ,
Լոյս օրինացն՝ 'ի նմա բնաբար :
Յաւագոյն յոյժ՝ քան զայս տաճար ,
զառ 'ի կուսէն՝ մարմին արար .

Էե

Ի երանց նըմանն՝ անշարժաբար ,
զեկեղեցւոյ՝ կանգնեալ կամար ։
Ունել ունէք՝ սա սրբազանն ,
խաղաղութե՟ անուն բարի .
Որով յաթոռ՝ բազմեալ նըստի ,
յերուսաղէմ՝ որ յաշխարհի ։
Ուստի և տէր՝ըն մեր լինի ,
խաղաղութե՟ն՝ բոլոց յերկրի .
Ոչ մարմնականն՝ որպէս ասի ,
այլ անմարմնոց՝ հօտք 'ի մարմնի ։
Ծնափափաք՝ անենչմնմք լըցաւ ,
սովաւ դըշխոյն՝ որ 'ի հարաւ .
Մինչ զի ծառաց՝ յերկրէ չոգաւ ,
յիմաստութե՟ սորա համբաւ ։
Մեծ քան զըսա՝ տէրն ասացաւ ,
որով զհրեայս՝ըն դատեցաւ .
Միոյն փոխան՝ ժողովս անբաւ ,
առ տէրըն մեր՝ հաւաքեցաւ ։
Ոչ համեմատ՝ երկրածընաց ,
բանն տէր՝ ըղձնա ասաց .
Ոչ 'ի նախնեաց՝ թագաւորաց ,
Ըոչ յապագայց՝ բըռնաւորաց ։
Ոչ մարմնականն՝ միայն փառաց ,
կամ հեշտութե՟ց՝ անցաւորաց .
Ունի զիմաստ՝ըս գերապանծ ,
զոր վերագոյն՝ ծանեաք բազմից ։

Նոյն

Նոյն ինձ ըղձանն՝ Տէր իմս ,
անզուգականն՝ փոլով սըմս .
Նա 'ի յերկրէս՝ է ստորակայ ,
Տէրն 'ի յերկնից՝ իջեալ արքայ :
Նըմա զիմաստըն չափով տայ ,
զՀօրն իւր ունի՝ ինքն անխընայ .
Նա կորուսեալ՝ զոր ետ նըմայ ,
սա շնորհըս տայ՝ որ յաղամիս :

Նորէն՝ 'ի Մաղաղեղ անուանն :

Նըմանաբար՝ խորհուրդ խորին .
յայտնէ և միւս՝ անուն նորին .
Եկայք տեսցուք՝ զիմաստ բանին ,
ըզ միտս անուան՝ ժողովողին :
Բանէ զՀանճարըս սա 'ի սմին ,
զիմաստութեց՝ ըզպիտանին .
Միով զորդւոյն՝ իսրայէլին ,
ժողովելով՝ զամենեսին .
Ի տեսանել՝ զայս առ փրկչին ,
Ճշմարտապէս՝ ժողովողին .
Սատուցելոց՝ ազդմամբ չարին ,
բերող զորդիսն՝ 'ի միասին :
'Ի խորանէ՝ սաստ ըստորին ,
յերուսաղէմ՝ Հանէ վերին .
Բայց և ըղշնորհս՝ Տէրային ,
զոր բաժանէ՝ մասունս Հոգին :

Աշակերտաց՝ շնորհէ բանին ,
նորքօք ծնընդոց՝ աւազանին ․
Ներսէս ծառայ՝ մնոյ վերջին ,
հայցեմ յառատ՝ շնորհէդ կրկին ։
Սրբել զհոգիս՝ յախտից չարին ,
տաճար առնել՝ քեզ վերստին ․
Ընդ միում՝ երրեակ անձին ,
Երգել միշտ փառս՝ ընդ սրովբէին ։

Այլ ևս նմանուն՝ գլխոյն առաջնոյ ։

Նորոգ ծնունդ՝ որ յերկիր իջաս ,
և յերկարեալ՝ կենօք մընաս ․
Եթէ 'ի խրատ՝ բանից սորայս ,
յօժարութե՛՝ սրտի կենաս ։
Բարուհաբար՝ իմաստնանաս ,
և հանճարով՝ փարթամանաս ․
Սէր զանցաւոր՝ մերժեա՛ 'ի բաց ,
սրով խրատիս՝ բանիւք սորայս ։
Զին սիրոյ՝ եթէ բաղձաս ,
և 'ի հրամանս՝ նորա դու կաս ․
Սրտիւ ընդ նոյն՝ իսկ միանաս ,
և 'ի յաստեացս՝ առ նա գընաս ։

Փառք քեզ՝ գլխոյն առաջնոյ ։

Բանիդ ընդ հօր՝ էականի ,
և Ճշմարտիս՝ սողոմոնինի ․

Ռղերասկանն՝ բանն ընծայի ,
մատուցանեմ՝ քեզ փառելի ։
«Նոյն ըղձածուն՝ զիմ լսելի ,
զլսօղ անյայտ՝ հոգւոց ձայնի ·
«Նոր նորոգեաց՝ ՚ի նոյն հոգի ,
լսել խրատու՝ այսօրք տաւի ։
Նու կատարել՝ գործով բարի ,
որով լինիմ՝ երանելի ·
Ռենական լոյս՝ ըղ· բաղձալի ,
և ճառագայթ՝ իմանալի ։
Սիրով քո հեղ՝ յիմքս հոգի ,
ըղձէր բանին՝ պատուիրանի ·
Երևելով՝ քան ըզ մեղուն ,
՚ի քիմս իմ քաղցր՝ և բաղձալի ։
Սաստեա՛ յոքունց՝ որ մեզ ախտք ,
և մըթութեցըն խաւարի ·
Ինձ ողորմեա՝ քում ծառայի ,
տառից գրողի՝ տէր Ներսէսի ։

Երգ երգոց գլխոյն ։

«Նորոգեալս՝ ՚ի քէն մխսուս ,
և ՚ի մեղաց՝ խաւարելս ·
Երբեմըն քեզ՝ հարամացելս ,
և այժմ ՚ի քէն՝ այրեցելս ։
Ռաբունապետ՝ ծագեաց մեզ լոյս ,
և անձեցո՝ զբարեացըն բոյս ·

Սե

Միրել զփեսայդ՝ իմոյ հոգւոյս ,
ըստ պարագրեալ՝ տաւից երգոյս ։
Նրանուհի՝ հարսին լուսոյս ,
լինել նորման՝ 'նք աղաւնոյս ․
Սրբել մաքուր՝ ըստ նորմանոյս ,
'ի կրից մեղաց՝ ախտացելոյս ։
'Ի քեզ հրպել՝ ինձ մեռելոյս ․
և կեանս առնուլ՝ տարագրելոյս ․
Նորեւելի՝ յայս կենցաղոյս ,
յիմանալիդ՝ փոխել 'ի լոյս ։





Սորին Նուագն՝ ոտանաւոր չափով գրեալ առ եղջերուորդին. երբ Աղերսաց 'ի հու-
պանդխտութեան :

Արեգակումն՝ լուսոյ ծագման ,
սէր քո առ իմ՝ համանմանն :
Սետին քաղցու՝ բժշկական ,
յագեցուցիչ՝ որ քեզ բաղձան :
Ապիրատիդ՝ գրեմ զայս բան .
եղբօրորդւոյդ՝ իմ ըղձական :
Վանծացելումդ՝ արիական ,
ձիավարժից՝ ներհըմտական :
'Ի տէգ նիզակ՝ շարժողական ,
որպէս ծըղօտ՝ մի եղեգան :
Բամեալ յաղթեակ՝ կըրող վահան ,
իբրև սանձով՝ անշեղական :
Արիութեանց՝ պարառական ,
նախնեաց քաջաց՝ըն գոլ նըման :
Տիրականիդ՝ ընդհանրական ,
որպէս լըսեմ՝ դու պատուական :
Նաև միւսում՝ սեռ արքունեան ,
յանդրանիկեայ՝ սիրալըրական :

Իսկ

Իսկ առ 'ի մէնջ՝ հրաժարական ,
'ի սիրելեացս՝ քո բնական :
Տենչանք սիրոյդ՝ սրտի տարփմամբ ,
մինչ զի կիզուլ՝ տեսոյդ յիշմամբ :
Նոցին վեհ՝ երանական ,
զքոյդ տեսութի՝ քոյքըս փարկան :
Բոտել 'ի յայս՝ վայր ամրական ,
գալով քոյին՝ է բիւրական :
Նորածութը՝ արքունական ,
առ սկիւթականս՝ ահեղ գոչման :
Նշանութեանց՝ արժանանան ,
որք տեսանեն՝ զայս եղական :
Բաբունաբար՝ գրաւորական ,
ծանո թէ է՝ բստուգական .
Սրտից մերոց՝ նրոճաղական ,
լինել յուսով՝ զոճարթական :
Ինձ դու յաւէտ՝ կայց խընդական ,
մարմնով առողջ՝ և հոգեկան :
Սիրոյ մի տար՝ աշխարհական ,
զհոգիդ դերել՝ անմարմնական :
Նորին սիրոյ՝ անզուգական ,
ջանա լինել՝ տասնջական :
Բայց մի բարուր՝ պատճառական ,
դընէր զհասանկ՝ըդ մանկական :
Նաև քեզ առցես՝ տիպ ցուցական ,
զբազում մանկունս՝ ծծական :

Նախ ըզ յովսէփ՝ եգիպտական ,
ապա զյոգունս՝ որ 'ի գըրի կան ։
Զարեացըն մի՛ լինիր նըման ,
որ զմանկութի՛ն՝ աշխարհի տան ։
Ո՛չ և որ ախտեց՛ըն յաղթական ,
եղեն մարմնով՝ այս հիւթական ։
Փայլեն 'ի դասս՝ հրեշտակական ,
խառնին 'ի գունդըն՝ սրովբէական ։
Որով ըզ քեզ՝ մարզէ իմ բան ,
լինել նոցա՝ նըմանական ։
Նայելելով՝ աստ յերկար ամ ,
և անդ ըզ կեանսն՝ որ անվախճան ։
Սակաւ բանից՛ըս խըրատական ,
լե՛ր ամրագոյն՝ դու պահապան ։
Ո՛չ և զհաւատդ՝ որ յաւազան ,
անշարժ պահեա՝ միշտ յաւիտեան ։
Ըստ լի ամաց՝ քոց երեսնից ,
գրեցան և տաղ՛ըս գովեստից ։
'Ի հիւանդոտ՝ և ցաւալից ,
անձնէ յաւուր՛ըս քառասնից ։
Յոր մերձ մահու՝ հասեալ մըտից ,
դարձոյց այսրէն՝ տէրն ամէնից ։
Որպէս լինիս՝ տեղեակ կըրից ,
'ի յեկեղց՛ըդ բընաւից ։

Ի գիրկս հօրն՝ է գրգուելին,
յորժ գերագոյն՝ անառակին.
Այս աշխարհի՝ հօր միածնին,
յեղբայրութիւն՝ հրաւիրելին ։
Խնդամ մեծաւ՝ այսու յուսով,
սթափեամ 'ի սգոյդ՝ ըսփոփելով.
Ծանի՛ր զբնութի՛ւնս մեր մարմնով,
մահկանացու՝ անդարձ վըճռով ։
Նայա՛ց 'ի կանգուն՝ օրինակով,
զոր մեզ ետուն՝ հարքըն գըրով.
Հայեա՛ց յաբէլ՝ արեամբ մահով,
հօրն առաջի՝ մեռանելով ։
Զեզ զաբրահամ՝ տիպ առնելով,
զորդին սիրօղ՝ նուիրելով.
Պամբար մանկանց՝ ողջակիզով,
զմինն ը̃ երից՝ ընծայելով ։
Դ'ոխացելոց՝ խորին փութով,
մանկանց եւթանց՝ նըմանելով.
Մակաբէանց՝ մօրն շամունով,
զոր աստուծոյ՝ տայր ցընծալով ։
Յիշեա՛ և զկեանք՝ըն տապանով,
ըղմարդկան մահ՝ մեռանելով.
Նոյն 'ի յերիր՝ յօր յառնելով.
և մեզ ետ յոյս՝ նըմանելով ։
Ընէ զքակեալս՝ նորոգելով,
յանմահ բնութի՝ փոփոխելով.

Որք հինգ տաղանդ՝ պատուիրանով,
շահին ըզգործս՛ըն հաւատով:
Չարք որ չարեաց՝ են գործարան,
յառնեն 'ի մահն՝ անմահական.
Պատին բոցովն՝ անշիջական,
ուտին յորդանցն՝ որ անվախճան:
Ջերմ արտասուաց՝ կարօտանան,
որ անօգուտ՝ է յետ մահուան.
Սամից վարուց՝ հետեւեցան,
վասն այնորիկ՝ անդադար լան:
Սուրբ տըղայքն՝ ոչ լալոյ ձայն,
այլ երգ խնդման՝ վայելչական.
Վասն այնորիկ՝ զգոյն տըխրական,
սեաւ ըզգեստիդ՝ 'ի յանձնէդ հան:
Տըրտմական կիրքն՝ առցեն վախճան,
դըստըն արտասուք՝ ձեր եւ կական.
Րոտես զերկուսնս՛ըդ թախծական,
զոր մահ մանկանս՛ըն ձեր ծընան:
Ցոյց զակամայդ՝ կամայական,
տալ ստեղծողին՝ յօժարական.
Լուծեալ մարմնոյն՝ որ 'ի տապան,
ծանիր զհոգին՝ յերկնից խորան:
Փառօք փայլէ՝ յարքայութեան,
ծագէ նըման՝ արեգական.
Քեզ մըխիթար՝ սակաւ այս բան,
չափով տառից՛ըս հայկական:

'Նայեա՛ց զոր ետ՝ քեզ Թագնաբար ,
Հայրըն գըթած՝ և բարերար ·
Եհան զորդին՝ քո յերկրէ չար ,
'ի հրեշտակաց՝ բիւրոցըն պար :
Որեննական՝ լուսոյն անճառ ,
Հուպ և տեսող՝ ըզնա արար ·
Սրբոցն որ անդ՝ համագումար ,
և ընտրելոց՝ըն հաւասար :
Եթէ յայս յոյս՝ ունիս հանձար ,
լինիս հոգւով՝ դու անմոլար ·
Սրտիդ կըրակն՝ որ կայ 'ի վառ ,
փոխի 'ի ցաւ՝ զուարթարար :
'Ի բաց դիր այժմ՝ ըզսգոյդ խաւար ,
որ անյուսիցն՝ է տրտմաբար ·
Եւ դու ընկալ՝ զայն անվըթար ,
զյուսացելոցն՝ զուարձարար :
Կենդանին՝ և կենարար ,
այն որ ձայնիւ՝ կոչեաց զղազար ·
Նու քեզ գոչէ՝ ածաբար ,
լուծցէ ըզսուգ՝ քոյ և զաշխար :
Թագաւոր՝ըն կամարար ,
որ զմարեմանն՝ ուրախ արար ·
Ուրախութիւն՝ քեզ անվըրձար ,
պարգևեսցէ՝ ածաբար :
Պաղէց զարտօսր՝ըն զայն յերկար ,
արտասուելով՝ըն մարդկաբար ·

'Ի

'Ի քէն բարձցէ՞ զորդոյդ խաւար ,
նոյնին բանիւ՝ կենդանարար ։
Ստաւոյ մահուն՝ մարմնապատար ,
վարշամակին՝ այն մահարար ·
Որ քոյ յուսոյն՝ անյուսարար ,
և հաւատոյդ՝ ծածկոյթ արկար ։
Աստուած նոցին՝ և զանիւ հար ,
զի փախիցեն՝ ծառայաբար ·
'Ի քէն մերկեա՞ զզգեստ տրտմարար,
զերթ ըզ պատան՝ մահուն ղազար ·
Հայեաց 'ի կինն՝ կղէոպատար ,
որ վասն որդւոյն՝ անմխիթար ·
Դչօքն ետես՝ լուսապայծառ ,
Թագիւ պճնեալ՝ արքայաբար ։
Որոց յիսուս՝ ձեզ տիրաբար ,
յաւուր մեծին՝ երկնագումար ·
Յուսցէ զորդին՝ ձեր գերափառ ,
օրհնեք նովաւ՝ զտէրն անդադար ։





Կարապետի Մեծի Վարդապետի ասացեալ.
Երգարան ողբանիս մանկանց եկեղեցւոյ ուսանել
առըր պատճառ՝ ըստ այբուբենից :

Ամենայնի՝ ընկեցեալ եմ ես,
դուք լուարուք՝ զորինչ ասեմ.
ով մանկունք իմ՝ ըզձեզ
խրատեմ,
և ըզբնութիւն իմ ձեզ ճառեմ:
Ո շնորհս իմաստից՝ ըն ձեզ բաշխեմ,
իմաստասէր՝ ուշիմ կազմեմ.
քանզի առատ՝ եմ որ շնորհեմ,
միայն ընկալջիք՝ ի փոյթ խնդրեմ:
Բախեա՛ ըզդուռն՝ թէ զայդ ունիս,
մի՛ երկմտիր՝ թէ շնորհք չունիս.
միայն սիրեա՛ ըզպտրելիս,
որ շտեմարան՝ շնորհաց լինիս:
Ո ի թէ շնորհաց՝ մանուկ լինիս,
և իմ հնազանդ՝ ոչ դըրժանիս.
մի՛ աշխատիր՝ զի չընդունիս,
դու զիմաստից՝ մաքուր հոգիս:

Գէ

Դերամաքուրն՝ յո̃ զեկոյց ,
դըպըրապետացն՝ այսպէս ուսոյց ·
զի զմարգարիտն՝ եւ ապացոյց ,
և զանհնազանդս՝ըն խոզ եցոյց :
Որ զմարգարիտ՝ըն տայ նոցունց ,
ներհակ լինի՝ ո̃ն որ ծանոյց ·
զի զմարգարիտն՝ աղտեղացոյց ,
և զանհնազանդսն՝ ոչ օգտեցոյց :
Դուռն իմ նոցա՝ է յոյժ փակած ,
որք չնչախտառն՝ ասեն թէ բաց ·
ներքուստ ձայնեմ՝ թէ դուրս կաց ,
քանզի չունիք՝ զիմաստից հաց :
Չունիք դուք բարք՝ հնզնդ արմնց ,
ոչ պատմուճան՝ մաքրասիրաց ·
մանկունք մ̃ն էր՝ ասէք թէ բաց ,
քանզի չունիք՝ զգեստ հարսնեաց :
Երգեմ ձայնիւ՝ ես նրունագող ,
կոչեմ ըզձեզ՝ իմ փափագող ·
յառագաստ իմ՝ դուք էք բնակող ,
եկայք կերայք՝ զհաց իմ ազդող :
Նրունեստ իմ գոյն՝ է բաղդատող ·
սրբատեսացն՝ եմ ես խնդրող ·
մ̃ն այնորիկ՝ եմ արտաքսող ,
կուբացն որ ոչ՝ են իմ տեսող :
Զհանդամանն՝ և ըզհանդէս ,
հնազանդութի՝ առ ՚ի բանէս ·

հար

հարցումն արա՝ վարդապետէս ,
նախ առաջին՝ երկեղապէս ։
Դու՛ր նըրպատակ՝ ըզյօժարհաննէս ,
որ 'ի լանջաց՝ըն նայապէս ·
զի մաքրեցաւ՝ յայսմ 'ի յախտէս ,
ցօղեաց զիմաստս՝ անձրևապէս ։
Ո՛ տևական՝ բանս և ուժեղ ,
տեսակս ունի խոր և զօրեղ ·
զի թէպէտ ոմն՝ իմաստազեղ ,
սկիզբն իմաստից՝ դընէր զերկեղ ·
Սակայն սա մի՛յր՝ է բազմաբեղ ,
կազմէ պըտուղ՝ քաղցր և համեղ ·
թէ զսա սիրեա լինիս բանեղ ։
գեղգեղափայլ՝ քան ըզբիւրեղ ։
Ընդ սոյն բանիս՝ և զա՛յն յօդեա ,
վարդապետին՝ սիրով անսա ·
մի՛ դու լինիր՝ իբր անըզգայ ,
անընդունակ՝ խրատու նորա ։
Լե՛ր օրինակ՝ սամուէլայ ,
թէ նա զիա՛րդ՝ անսայր հեղեայ ·
ո՛չ ոփնիեա՝ փենէհեզա՛յ ,
որք քամահօղ՝ գըտան նըմա ։
Թէ զքեզ խրատէ՝ ազգողաբար ,
մի՛ երկընչիր՝ անյուսաբար ·
եթէ սիրէ՝ զքեզ հայրաբար ,
մի՛ վըստահիր՝ ոմն զախմար ։

Թէ

Թուէ ապտակէ՝ իշխանաբար,
մի՛ երկմըտիր՝ ծառայաբար.
այլ աղերսեա՛ որդիաբար,
շարժեա՛ 'ի գութ՝ ո՛չ ըզհայր:
Ծրացի՛ր մանուկ՝ իմ խոհական,
վա՛ այն կրկնեմ՝ վերըստին բան.
զվարդապետին՝ քում հրաման,
մի՛ երկրորդեր՝ կըրկին անգամ:
Յոգունք շնորհաց՝ ո՛չ օգտեցան,
որք անհնազանդ՝ նըմին գըտան.
բազումք հասան՝ 'ի կէտն ուսման,
Թէպէտ անշնորհ՝ ներհունացան:
Իսկ այս բանիս՝ լե՛ր հաւանօղ,
ա՛ռ ապացոյց՝ զյակոբ խաբօղ.
որ եղև նա՝ իբրև ըզգօղ,
հնազանդութ՟բ՝ եղև իշխօղ:
Երէցն եսաւ՝ ապըստամբօղ,
անդրանկութե՟ըն կորուսօղ.
Թէպէտ յետոյ՝ եղև ժըտօղ,
զնա յակոբայ՝ ծառայ եթօղ:
Լսողութի՟ն՝ է քեզ բարի,
մանուկ դու լե՛ր՝ զգաստ և արի.
արա՛ ըզկամք՝ըդ կաւ բըրտի,
առ խըրատուն՝ վարդապետի:
Քանզի այս է՝ խաչն յիսուսի,
որ պահանջէ՝ յամենայնի.

զի 'ի յանձուկ՝ ճանապարհի ,
նա ընթանայ՝ որ զայս ունի ։
Խորհուրդ բանամ՝ քեզ գիտութե՛ ,
առ 'ի շահից՝ հնազանդութեան ·
զուշիմութի՛ ըզգաստական ,
զհամեստութի՛ ըն մաքրական ։
Որք և սոցունց՝ բարք կազմեցան ,
հասին 'ի կէտ՝ ըն մարդկութե՛ ·
'ի մարդկանէ՝ յոյժ յարգեցան ,
և աստուծոյ՝ հաճոյացան ։
Ստանձիր և զայս՝ մանուկ համեստ ,
զհամեստութե՛ մասանց արուեստ ·
առ ըզխըրատ՝ յինէն պահեստ ,
քոյին բարուցդ՝ արա ըզգեստ ։
Եթէ նըստիս՝ և թէ յառնես ,
և թէ խօսիս՝ և թէ լռես ·
յամենայնի՝ լեր դու համեստ ,
մի՛ խըրստամբական՝ լինիր և հեստ ։
Կարգեա՛ սահման՝ անձինըդ քոյ ,
յորժամ նստիս՝ ը՟ եղբարս քոյ ·
մի ըզկուռս քո՝ տացես որմոյ ,
մի՛ մեկներ զոտս՝ ը՟ անասնոյ ։
Մի՛ հայեսցիս՝ այլ ը՟ այլս ,
մի՛ թանձրասցիս՝ իբր 'ի քընոյ ·
այլ զծունկս քո՝ ուղիղ մածո՛յ ,
ծածկեա՛ զմարմինդ՝ հանդերձիւ քոյ ։

Ղա

Ճաշարակաց՝ զխրատս պահեա՛,
ըզվերոյ գրեալս՝ ստուգիւ իմա՛.
բայց զմիջպետս՝ այսպէս պատուեա՛,
կանգուն կալով՝ սպասաւորեա՛ :
Թէ հրամայէ՝ ապա բազմեա՛,
և զգաստութբ՝ զնա նկատեա՛.
Թէ խրատ տացէ՝ առ և մալեա՛,
ապա թէ ոչ՝ բանս ինչ խոսկա՛ :
Ձայն խրրատու՝ վարդապետին,
քեզ քաղցրացին՝ քան ըզմեղուին.
որպէս երբեմն՝ ըն յիսուսին,
հարիւրաւոր՝ յերկիր բարին :
Ու թէ տացես՝ զպատասխանին,
հաւանական՝ լիցի նըմին.
որպէս երբեմն՝ 'ի տաճարին,
զոն յիսուսէ՝ զարմանային :
Գամբարապէս՝ մանուկ փայլիս,
թէ իմասցիս՝ զխորհուրդ բանիս.
Ը̃ քո եղբարս՝ յորժամ ճաշիս,
խենեշաբար՝ մի՛ կորասցիս :
Իբր անասուն՝ մի՛ փութասցիս,
որպէս գաղան՝ մի՛ յագեսցիս.
զգլուխդ ուղիղ՝ կա՛լ ը̃ խրատիս,
որ յամենայն՝ մարդկան գովիս :
Ճառեմ զբանս իմ՝ օրինակով,
մանուկ լուէ՝ զխրատս իմ հոգւով.

պարկեշտ պահեա՛ զքեզ կերակրով,
ը͞ն դանիէլի՛ անսուաղ կալով:
Որ ըզտասասունսն՛ըն պահելով,
պայծառացար՛ մաքուր հոգւով.
արժանացար՛ սուրբըն սըրտով,
զառաջիկայն՛ գուշակելով:
Սանուկ կամիմ՛ քեզ բան խօսել,
զխորս իմաստից՛ ուսուցանել.
զի մանկութե՛ դու ես արբել,
դարձեր գինւով՛ զքեզ մի՛ զմայլել:
Վայել է քեզ զայն՛ բաժակն ընտրել,
զոր Տէրն ասաց՛ կամիմ ըմպել.
և այն մանկանց՛ըն նըմանել,
որ 'ի սկիւթ լեռան՛ էն բնակել:
Յորժամ՛ 'ի սկիւթ՛ գինի բերաւ,
առնուլ եղբարցն՛ անտի սակաւ.
մանուկ եղբայր՛ ոչն տեսաւ,
և 'ի տեղւոյն՛ փութով փախեաւ:
Փախըստենէն՛ տունըն փըլաւ,
որ 'ի յընթացս՛ համդիպեցաւ.
յոր առաջնորդն՛ ուրախացաւ,
գովմամբ 'ի գիրկս իւր ընկալաւ:
Նորոգ մանուկ՛ իմ բանաւոր,
յորժամ խօսիս՛ լե՛ր երկնաւոր.
պահեա՛ ըզձայն՛ըդ չափաւոր,
կազմեա՛ ըզբանս՛ըդ կարգաւոր:

Գ․Ը

Գըլուխըդ կա՛լ՝ խորհըդաւոր ,
դիտեա՛ ակամբ՝ըդ նուրբ և խոր .
կըցեա՛ ըղձեռք՝ըդ դիպաւոր ,
որով կոչիս՝ այր մըտաւոր :
Շնորհօց սիրող՝ զխըրատս իմ յորդեա՛,
և առաջի՝ ծերոց լըռեա՛ .
դու իմաստնոց՝ ունկն դըրեա՛ ,
և զմեծ եղբարս՝ըն մեծարեա՛ :
Օ կրասեր եղբարս՝ըն խըրատեա՛ ,
զհիւրսըն յօժար՝ սրտի՛ պատուեա՛.
ամենեցուն՝ երկըրպագեա՛ ,
զքեզ անպիտան՝ ծառայ արա :
Ուշիմ մանուկ՝ և զայս ընկա՛լ ,
ծեր տեսանես՝ զխոհեմ եղբայր .
եթէ խօսին՝ բանս ինչ յարմար ,
կաց դու լըռին՝ և անբարբառ :
Տե՛ս զյոհաննէս՝ զիւ՚րդ մընայր ,
՚ի դուրս այրին՝ մինչ պետրոս գայր .
տե՛ս ըզպօղոս՝ զիա՛րդ անսայր ,
նա սիմոնի՝ մինչ ՚ի հռոմ կայր :
Չէ՛ պարտ համբակ՝ քեզ ծիծաղիլ ,
այլ թէ հարկիս՝ միայն ժըպտիլ .
մի՛ ըզ եղբարս՝ըն վըստահիլ ,
և մի՛ ՚ի չար՝ կատակն յարիլ :
Օ երեքօրի՝ մանկանցն օձիր ,
որք պատժեցան՝ յարջէ ծանիր .
զեղե

զեղխնէն կատական ուսնը ,
եթէ զխարդ՝ և զգուշացնը ։
Պատուիրեմ քեզ՝ 'ի յայս մարդել ,
և զհայելոյն՝ ոտն ուսանել ․
մի՛ գեղջկապէս՝ հայեցս առնել ,
մի՛ յարաժամ՝ յիրս ինչ պըշնել ։
Այլ 'ի կողմանց՝ գաղտ նըկատել ,
ընաւ զգըլուխն՝ գէթ չըշարժել ․
թէ շահաւէտ՝ է նըշմարել ,
և զորոնումն՝ անյայտ առնել ։
Ծահ քեզ փառեմ՝ փայլողապէս ,
թէ զոր խրատեմ՝ առնես այսպէս ․
թէ ծառայիս՝ դու 'ի հանդէս ,
պահեա՛ ըզքեզ՝ ժուժկալապէս ։
Թէ գայ յօրանջն՝ անասնապէս ,
պընդեա՛ զշըրթունսն՝ ըրդ մեղկապէս ․
թէ ըմպես ջուր՝ առանձնապէս ,
մի հնչեսցես՝ ձայնս պէսպէս ։
Ռամիկ արանցն՝ որ անմաքուր ,
մի՛ նախանձիր՝ մանուկ մաքուր ․
որք ըզպատճառ՝ և ըզբարուր ;
մեգք քեզ յօդեն՝ իբր ըզբըլուր ։
Այլ զպատճառաց՝ ըն չար անուր ,
'ի քո բարուցդ՝ սրա՛ թափուր ․
թէ բորբոքիս՝ առ դու ըզջուր ,
և զնա շիջո՛ որպէս ըզհուր ։

Սիրեալ տղեակ՝ իմ ըղձալուն ,
զիմաստ հոգւոյն՝ խոր և անհուն .
ոչ զմեծութիւն՝ այս որ է խուն ,
ոչ ըզկենցաղ՝ այս անկայուն :
Նայիմ ապացոյց՝ դեր և քանոն ,
զմանուկն ուշիմ՝ ըզսողոմոն .
որ մաղթեաց առ՝ տէր գերագոյն ,
Ս տուր ինձ զիմաստ՛ըս սբ հոգւոյն :
եհ անկատակ՝ ուսումնասէր ,
արդ զընութիւն՝ քո հարցանէր .
որպէս յո՛՝ որ հարցանէր ,
և 'ի տաճարն՝ հետազօտէր :
Ո՛չ թէ կարօտ՝ էր զայն առնէր ,
այլ զքեզ ինքեամբ՝ ուսուցանէր .
առնել զմանուկդ՝ ածանէր ,
կազմել զհամբակդ՝ իմաստասէր :
Տես և հայեաց՝ դու ով համբակ ,
որ յիմաստիցդ՝ եղեր հատակ .
յերկուց իրաց՝ զգուշ լեր համակ ,
պահել զիմաստ՛ըս քո յըստակ :
Օ յովսէփ նմին՝ դեր նըպատակ ,
լեր նախանձուն՝ անընդունակ .
միւսոյն արա՝ զնա քեզ պըսակ ,
Բ քակել զախտից՝ըն հանդանակ :
պարունօրէն՝ զոր ասացի ,
զհնազանդութե՝ շահն ուսուցի .

մնս

մանուկ խօսել՝ երկրորդեցի ;
զի հեշտալի՝ ձայնս ինձ Թոթուէի :
Այս օրինակ՝ բազում ունի ;
դու հաւաքէ՝ 'ի մի տեղի ·
հիւսեալ պըսակ՝ըս ցանկալի ,
դիր 'ի գըլուխ՝ըդ պանծալի :
Ցուցից զհայրն՝ որ ետ չոր փայտ ;
աշակերտին՝ Թէ տընկեա զայդ ·
տուր յարաժամ՝ ջուր յորդառատ ;
զոր և արար՝ մանուկն ըզկորատ :
Ո լի Թէպէտ ջուրըն՝ էր յոյժ բացատ ;
այլ նա զերկամ՝ եղև աշխատ ·
որ ետ պըտուղ՝ առեալ արմատ ,
դու հաւատա՝ որդեակ հաստատ :
Հիւսեալ է այս՝ բանիս յարմար ,
զկեհ ամն արքայ՝ որ փորձաբար ·
կոչեաց զորդիսն՝ իւր հաւասար ;
ետ 'ի նոսա՝ զակըն պայծառ :
Ասաց փըշրել՝ յօժարաբար ;
զոր չարոտրին՝ հրաժարաբար ·
միայն կըրտսերն՝ զհրամանն արար ;
և զտէրուԹե՝ ժառանգն էառ :
Փայլեալ մանուկ՝ հնազանդօրէն ,
մարզեալ 'ի վեհ՝ ձեմարանէն ·
'ի պըղատոնի՝ աշակերտէն ,
յարիստոտէլ՝ նըրբախօսէն :

Որ զգաստն առէր՝ երկիւղօրէն ,
և ոչ նըստէր՝ ծառայօրէն .
զպղպատոն պատուէր՝ ածօրէն ,
մինչև ՚ի մահըն՝ որ էր օրէն :
Քեզ յարացոյց՝ այսըմ բանիս ,
քաղցր թուեսցի՝ քան ըզխորհուրդս .
միայն ըզսա՛ թէ ճաշակիս ,
՚ի կենցաղըս՝ ծրագարեսցիս :
Մ՝ակացութե՝ պարապեսցիս ,
յիմաստութե՝ կէտըն հասցիս .
՚ի ներհունաց՝ գովըս յաստիս ,
և անդ փայլըս՝ որպէս յաստղիս :

Սէր և մաղեալ՝ որդեակ զիմաստ ,
որով լիցիս՝ արի և զգաստ .
Ըզխոնարհն է ծով՝ ալիանաստ ,
լեր դու արագ՝ դիտօղ նաւաստ :
Բեռնեա զմարմնոյդ՝ ըզչըմնչին լաստ ,
կազմեա զհոգւոյդ՝ քո զառագաստ .
Ըո ըզհոգւոյն՝ հողմըն պատճառաստ ,
դեկեա խորատիւմ՝ և լեր պատրաստ :
Պահեա ըզքեզ՝ յաստիս ըզգաստ ,
զի մի՛ սոցունց՝ արկցիս տապաստ .
Նորանելըր՝ և բարեբաստ ,
լիցիս թէ յիմն՝ հասցես երաստ :

Տա

Ջալոփն ընկալ՝ զերատս իմ նըկալեալ ,
Թէպէտ վիպօղս՝ եմ յոյժ նըուաստ .
Ի՛ սա ընծայ՝ սուղ իմն և փաստ ,
Նորամանըգչիցն՝ որք 'ի ջահ աստ ։

# Վ. Ե Ր Ջ.



